# ՁՄԵՌ ՊԱՊԻՆ ՈՒ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Երանի՜ ձեզ, բալիկներ՝
Ծաղկափթիթ ու աշխույժ,
Որտեղի՞ց է արդյոք ձեզ
Այդքան եռանդ, այդքան ուժ։
Ձեր անհանգիստ ոտքի տակ
Սառույցն է լուռ արտասվում,
Ձեր խաղից ու շնչից տաք
Ասես գարուն է բացվում։
Մերթ սղղում եք դահուկով
Ու նետի պես սլանում,
Մերթ մրցում եք գնդակով,
Կրակի պես շիկանում։
Ժպտում է ձեզ ապագան,
Բաց է ճամփան ձեր բախտի,
Կուզեք ուսման կգնաք,
Կուզեք՝ սիրած արհեստի։
Ձեր ժպիտից մեղրածոր
Սիրտն է ցնծում ծերուկիս,
Քիչ է մնում սևանա
Ճերմակ մազը մորուքիս...
Դե, ծա՛փ տվեք, ծա՛փ տվեք,
Մատա՜ղ լինեմ ձեր ծափին,
Տոնածառի շուրջը թող
Մի լավ պարի ձեր պապին։

Նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

ՀԼԿԵՄ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՄԱՆԿԱԿԱՆ
ԱՄՍԱԳԻՐ

# ՊԻՈՆԵՐ

№ 1 1958 թ.
ՀՈՒՆՎԱՐ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
[illegible]-ՐԴ ՏԱՐԻ

36



## Դահուկներ

Խ. ՀՐԱՋՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ձյունը գալիս էր առատ, մեծ-մեծ փաթիլներով, դիմացի տները թաքցնելով տեսողությունից: Արդեն գետինը ծածկվել էր կաթնագույն սավանով, և Վարդանի կոշիկներն անաղմուկ տպվում էին փափուկ ձյան մեջ: Բայց նա կարծես չէր նկատում դա, չնայած վաղուց էր երազում առաջին ձյունը. հայրը, տեղի տալով նրա թախանձանքներին, վերջապես մի զույգ իսկական դահուկ էր բերել քաղաքից, և Վարդանն անհամբերությամբ սպասում էր ձյան նստելուն:

Եվ ահա ձյունը նստում էր:

Սակայն Վարդանը հիմա ուրախ չէր դրա համար: Նույնիսկ կուզենար, որ հայրը գնած չլիներ այդ դահուկները: Այո, գնած չլիներ: Այն ժամանակ թերևս ընկեր Ավագյանը այդ խոսքը չասեր...

Հիմա էլ ընկեր Ավագյանը: Ի՞նչ գործ ունի այստեղ ընկեր Ավագյանը: Նա չասեր, մի ուրիշը կասեր:

Ամեն բանում ի՛նքը... միայն ինքն է մեղավոր:

«Հե՛չ էլ... Ինչո՞ւ էր Սուրիկը թութակի պես կրկնում ընկեր Ավագյանի խոսքը... Էդպես բաների համար մի հասւ է»:

Մի պահ կարծես հանգստացավ և նոր միայն նկատեց, որ մեծ-մեծ փաթիլներով ձյուն է գալիս: Դիմացի տները չէին երևում: Արդեն գետինը ծածկվել էր կաթնագույն սավանով, և նրա կոշիկներն անաղմուկ տպվում էին փափուկ ձյան մեջ: Հաճելի էր:

Սակայն այդ հանգստությունը կարճ տևեց: Շուտով նա նորից տարվեց ծանր մտքերով:

Ամեն ինչ սկսվեց այդ չարաբաստիկ դահուկներից:

Զանգը տվին, և հինգերորդ «բ» դասարանը ներս անցավ: Նստել և սպասում էին աշխարհագրության դասատու ընկ. Ամալյային, որն ուշանում էր: Պարզվեց, որ նա հիվանդ է: Մի քիչ տխրեցին, հետո ուրախացան, խելահեղ կերպով շրխկշրխկացրին նստարանների փեղկերը և հավաքվեցին տաք վառարանի շուրջը:

— Եկեք ծլկենք,—առաջարկեց Սուրիկը:

— Ընը՛, ի՞նչ էի ասում,—վրա տվեց Սեդան՝ շիկահեր, պլստան աչքերով մի աղջիկ, որը ոչինչ չէր ասել. պարզապես նա «ատամ ուներ» Սուրիկի



դեմ և սիրում էր հակառակել նրան։—Ըհը՛, ի՞նչ էի ասում... Ծլկե՛նք։ Ուրիշ բան հո չգիտես... Մի գլուխ փախչել, ծլկել...

— Քեզ չեն հարցնում, չաչանա՛կ,—խեթեց Սուրիկը։

— Չաչանակը դու ես։

— Վերջ տվեք,—հանգիստ միջամտեց Գեղամը, և Սեդան դժվարությամբ կուլ տվեց լեզվի ծայրին եկած բառերը։ Գեղամին չէր կարելի առարկել. նա դասարանի ամենաուժեղ տղան էր, չնայած երբեք դրանով չէր պարծենում։

Սկսեցին խոսել ուրիշ բաներից՝ դասերից, ուսուցիչներից, երբ հանկարծ մեկն ուրախ բացականչեց.

— Ուռա՛, ձյուն է գալիս։

Բոլորը պատուհաններից դուրս նայեցին. իսկապես, ձյուն էր գալիս։ Աղմուկով նետվեցին բակ և սկսեցին գնդի-գլոր գալ ձյան բարակ շերտի վրա, իսկ Սուրիկը լեզուն դուրս գցած կանգնել, սպասում էր, թե երբ ձյան փաթիլ կնստի լեզվին, որպեսզի հաճույքից վեր-վեր թռչի ու բղավի կոկորդով մեկ։

Առաջին ոգևորությունն անցնելուց հետո, խոսք բացվեց առաջիկա դահուկային արշավի մասին, և հենց այդ ժամանակ էլ Վարդանի դահուկները մեջտեղ եկան։ Նա սկսեց ոգևորությամբ նկարագրել իր իսկական դահուկները, ձեռնափայտերը, որոնք օղակներ ունեին ու մետաղյա սուր ծայրեր, և այնքան տարվեց, որ չնկատեց ընկեր Ավագյանի մոտենալը։

— Ունեցածով չպետք է պարծենալ, Վարդան,— նկատեց նա,—դա վատ բան է։

Տղաները փռթկացին, իսկ Վարդանը վիրավորանքից կարմրեց։ Նա խոսք չգտավ պատասխանելու։ Ներս գնացին։ Ընկեր Ավագյանն անցավ դասին, կարծես ոչինչ չէր պատահել։ Շուտով բոլորը մոռացան այդ միջադեպը, Վարդանն էլ հանգստացավ։ Իսկ երբ ընկեր Ավագյանը հիշեցրեց, որ պետք է դահուկները կարգի բերել և պատրաստ լինել արշավի, Վարդանն իրենից անկախ ոտքի թռավ և նորից սկսեց խոսել իր դահուկների մասին, որոնք իսկական էին, իսկ ձեռնափայտերը օղակներ ունեին ու մետաղյա սուր ծայրեր...

— Գլուխ տարար քո դահուկներով,—դասարանով մեկ ձայն տվեց Սուրիկը։—Ունեցածով չպետք է պարծենալ...

Այդ այնքան անսպասելի էր, որ նույնիսկ ընկեր Ավագյանը զարմանքով նայեց Սուրիկին, ասես կամենալով հարցնել. «Քեզ ի՞նչ պատահեց»։

Ընկեր Ավագյանն արդեն պատրաստում էր այդ նույն հարցը տալ լսելի ձայնով, երբ տեղի ունեցավ ավելի անսպասելի մի բան։ Վարդանը սփրթնած շուռ եկավ և չարությամբ նետեց Սուրիկի դեմքին.

— Քո ի՛նչ բանն է, խուժա՛ն։

Դասարանը քարացավ։ Դա չլսված բան էր։ Բո-

լորն սպասում էին, թե ընկեր Ավագյանն ինչ պատիժ կտա Վարդանին։ Բայց նա միայն ցավով ու ափսոսանքով նայեց նրան, ապա լուռ նստեց աթոռին ու գլուխն առավ ափերի մեջ։

Վարդանն ուզում էր ընկեր Ավագյանից ներողություն խնդրել, բայց... վերցրեց պայուսակն ու դուրս նետվեց դասարանից։

Եվ այժմ ահա քայլում է մենակ, պաշարված անուրախ մտքերով։

Տեսնես ինչի՞ց է, որ ինքն այդպես հեշտությամբ կարողանում է վիրավորել ընկերներին։ Ախր չի ուզում այդպես անել, այն էլ ինչպե՜ս... Ամեն անգամ ինքն իրեն խոստանում է այլևս չտաքանալ, անմիտ քայլ չանել, բայց հենց որ գալիս է խոստումը կատարելու րոպեն, ամեն ինչ մոռանում է։ Դրան հաջորդում են ափսոսանքի ու զղջման պահերը, որոնք ինչքան երկար, նույնքան էլ տանջալից են լինում։ Այդ ժամանակ նա պատրաստ է բոլորից և ամեն մեկից ներողություն խնդրելու։

Լավ, մինչև ե՞րբ կարելի է այդպես շարունակել։ Մարդ պետք է հաստատամիտ լինի, թե չէ ինչի՞ է նման։ Ընկերները նրան հարգում են, որ շատ է կարդում, բայց ո՞ր գրքի հերոսն է այդպես անում... Սուրիկին խուժան անվանեց, մինչդեռ նա ամենևին էլ խուժան չէ։ Ճիշտ է, մի քիչ փչան է ու իրեն երևակայող, բայց ո՞վ պակասություն չունի։

Հապա ընկեր Ավագյանը... Ինչպե՜ս վիրավորեց նրան այդպիսի խոսք ասելով Սուրիկին և դասարանից հեռանալով... Հիմա ի՞նչ երեսով պիտի երևա նրան։ Ընկեր Ավագյանը կհասկանա ու երևի կների։

«Ա՜յ, հենց էդ է, որ կա՝ կների... Հույսդ շարունակ դիր դրա վրա»։

Ձյունը շարունակում էր տեղալ։

Վարդանը պայուսակը դրել էր թևի տակ, ձեռքերը կոխել շալվարի գրպանները, գլուխը ներս քաշել և այդպես շարունակում էր առաջ գնալ։

Հանկարծ մի աղիողորմ մլավյուն լսեց։ Գլուխը վեր առավ ու նայեց այն կողմ։ Սպիտակ խալերով մի կատվի ձագ ճանկռում էր մոտակա բակի դուռը և աշխատում ներս մտնել։ Բայց դուռը չէր բացվում։ Նա մերթ ընդ մերթ թափահարում էր գլուխը, թաթիկներով բարկացած թափ տալիս ականջներին նստած ձյունը և նորից շարունակում ճանկռել դուռը։

Վարդանը պայուսակը դրեց պատի տակ ու կատվին գիրկն առավ, սկսեց շոյել։ Փիսիկը դողում էր, հետո սկսեց մռմռալ և մի երկու անգամ լիզեց նրա քիթը։ Լեզուն փշփշոտ էր, տաք։ Վարդանը ուսով հրեց դուռը և կատվին զգուշությամբ դրեց գետնին։ Մինչև դուռը վրա քաշեր, տեսավ, թե ինչպես նա պոչը տնկած, անաղմուկ ցատկելով, վազեց դեպի տան պատշգամբը։

Վարդանը շարունակեց ճամփան։

Երեկոյան շուտ անկողին մտավ, պատրվակ բռնելով գլխացավը։ Գիրքը ձեռքն առավ, որ կարդա, չկարողացավ. աչքերը վազում էին տողերի վրայով, առանց մտքին որևէ բան ասելու։ Գիրքը փակեց, վերմակը քաշեց գլխին և շուռ եկավ դեպի պատուհանը։ Ապակիները սև էին, անթափանց։ Ձյան փաթիլները մեղմ սվսվում էին, զարկվելով ապակիներին, և անմիջապես հալվում։



Նա Նորից անձնատուր եղավ իր մտքերին, որոնք այժմ այնքան էլ ճնշող չէին: Տաք անկողինը, պատուհանի սև ապակիները, որոնց հետևում ձյունը տեղում էր ու տեղում, սենյակի անվրդով խաղաղությունը (տնեցիները թեյում էին հաշտում),— այդ ամենը մի տեսակ մեղմացնում էր Նրա հոգու խռովքը: Սկսեց արթուն երազել...

Ձյուն է, ձյունապատ տափարակ, որը շողշողում է արևի պաղ ճառագայթների տակ, կայծկլտում, ստվերոտ տեղերում կապտին տալիս: Իրենք սլանում են դաշտով, և բոլորի առջևում Սուրիկն է՝ Նոր, փայլուն դահուկները ոտքերին... Վարդանի դահուկները... Ինքն է տվել, որովհետև Սուրիկն իրենները ջարդել է: Նա լավ է վազում. այնպես էլ ոչ ոք Սուրիկի հետ չի կարող մրցել, իսկ հիմա, երբ Նա Նոր, իսկական դահուկներ ունի ոտքերին... Վարդանի դահուկները... Եվ Վարդանը բոլորովին չի Նախանձում Սուրիկին, ընդհակառակը, շատ, շատ ուրախ է... Լավ տղա է Սուրիկը: Ճիշտ է, մի քիչ փչան է ու երևակայող, բայց ինչ անենք, ո՞վ պակասություն չունի...

Ու թռչում է Նա, թռչում շլացուցիչ դաշտի միջով, և Վարդանն ուրախ է, անսահման ուրախ... Իսկ դիմացից հանգիստ Նրան է Նայում ընկեր Ավագյանը...

«Ազնիվ խոսք, ընկեր Ավագյան, ես էլ երբեք, երբեք...», և չի կարողանում միտքն ավարտել, հուզմունքից կոկորդը սեղմվում է, աչքերը տաքանում են... Հանկարծ Նա իր վրա զգում է ընկերների հայացքները՝ ջերմ, խրախուսող: Ինչքան լավ է այսպես... Եվ, չգիտես ինչու, Նորից հիշում է այն կատվի ձագին, որը դողդողում էր ու մլավելով ճանկռում դուռը...

Նա այլևս չկարողացավ զսպել իրեն ու հեծկլտաց խավարի մեջ անզուսպ արցունքներով:

Դուռը բացվեց և Ներս մտավ մայրը:

Վարդանը Նկատեց, թե ինչպես Նա ձեռքը տարավ դեպի անջատիչը, և աչքերը փակեց: Փակ կոպերի տակից էլ զգաց լույսի բռնկվելը:

— Վարդան ջան, ի՞նչ է պատահել,—վախեցած հարցրեց մայրը, մոտենալով որդու անկողնուն:

Վարդանն աշխատում էր շնչել հանգիստ ու անխռով:

«Քնի մեջ էր», մտածեց մայրը և, լույսը հանգցնելով, ոտքի թաթերի վրա դուրս գնաց:

Վարդանը ժպտաց խավարի մեջ, ժպտաց արցունքների միջից ու քիչ հետո քնեց:

## Փաթիլների տակ

Ձյան փաթիլներն են թվում պարելով
Եղևնիների ճյուղերին շեղ,
Ձմռան գիշերն էլ թվել լուսով,
Քնքուշ երազ է լցրել ամեն տեղ:
Գյուղի առուն էլ կարծես հոգնել է,
Քնել է մաքուր փաթիլների տակ,
Բայց գարնան շունչը իր մեջ պահել է,
Որ գարուն գտնի փաթիլների տակ:

Միքայել Քանքանյան
(Երևանի Ե. Չարենցի անվան դպրոցի աշակերտ)

# Հիմար եղևնին



ԿԱՐԴԻՍ ՀՈԳՏԱՆՅԱՆ

— Չե՛մ ուզում, տոնածառ լավ չէ՞, չե՛մ ուզում, չե՛մ... — բրթմնջում էր բարձր ու փարթամ շենքի փոքրիկ տղան։ Նա խռովկան՝ սենյակի անկյունից տոնածառին էր նայում։

Հայրը եղևնու ճյուղերին էր ամրացնում գույնըզգույն, փոքրիկ լամպիկներով խաղալիքները և բամբակե փոքրիկ կտորները։

Սակայն բարձր ու փարթամ շենքի փոքրիկ տղան դժգոհ էր։ Դժգոհ էր գույնզգույն, փոքրիկ լամպիկներից, կախված խաղալիքներից, ձյունից, եղևնուց, բոլորից, բոլորից...

Հայրը եղևնին զարդարեց։

Գեղեցիկ էր տոնածառը, շքեղ սենյակում շքեղորեն զարդարված, լույսով հեղեղված։ Տոն էր սենյակում։

Շքեղ սենյակի գեղեցիկ տոնածառ ունեցող փոքրիկ տղան դժգոհ էր։ Եվ նա այնքան դժգոհ էր, որ արդեն չարացել էր։ Զայրույթից ոտքերը հատակին էր խփում։ Հիմա նա ուզում էր պոկոտել եղևնու արմատի մոտ մնացած փոքրիկ ճյուղերը։

Հայրը չէր թողնում։

Փոքրիկ տղան սպառնում էր ջարդել բոլոր խաղալիքներն ու զարդարանքները։

Բարձր ու փարթամ շենքի փոքրիկ տղան այդպես էր ուզում, և այդպես էլ եղավ, թեև այդ ճյուղերը չէին խանգարում, որ եղևնին ավելի գեղեցիկ լինի։

Հայրը կտրեց ճյուղերը և լուսամուտից դուրս նետեց։

Նրանք ընկան, խրվեցին փափուկ ձյան մեջ և, կարծես, սկսեցին հանգիստ ննջել։ Նրանց մուգ կանաչը ավելի շեշտվեց և ավելի պայծառ սպիտակեց շրջապատի սպիտակ սավանը։

Ուշ երեկո էր։

Արդյոք ամե՞ն տուն լույսով էր հեղեղված, ինչպես բարձր ու փարթամ շենքի սենյակները։

Դուրսը ցուրտ էր, լուռ ու խաղաղ։

Սպիտակ ու փափուկ սավանի մեջ խրվել էին եղևնու փոքրիկ ճյուղերը՝ լռված ու տրտում։

Վաղ առավոտ էր, լուռ և ուրախ։

Նոր տարվա գիշերը դիմավորողները ծուլանում էին վեր կենալ։

Իսկ ո՞վ էր քնել այս գիշեր...

Փոքրիկ Տակին իրենց տնակի խարխուլ դռնակը բաց արեց ու գլորվեց ձյան մեջ։ Հետո մեղմ սուլեց, ինչպես զարթնող թռչունները։ Ձեռքերը, այտերն ու քիթը կարմրել էին սառնամանիքից։ Իսկ ո՞վ էր մտածում ցրտի մասին... Չէ՞ որ նոր տարի է այսօր։

— Հե՜յ, Յողա՛կի, դուրս արի, նոր տարի՜ է, — մոտեցավ նա մի տնակի լուսամուտին։ — Դուրս արի, տե՛ս, ձյունը նոր տարվա նման ինչպես է փայլում։

Յողակին լուսամուտը բաց արեց։ Նա դեռ կիսամերկ էր։ Ճպռոտ աչքերը շփելով՝ նայեց ձյան սպիտակ ու մաքուր սավանին, ժպտաց ու շլացող աչքերը փոքրացնելով ասաց.

— Դուքս եմ գալիս։

— Դե, շո՛ւտ, — ասաց փոքրիկ Տակին և նորից սուլեց ուրախ՝ անհոգ թռչունների պես կուշտ ու երջանիկ։

Նրա ծլվլոցից իրենց տնակներից դուրս եկան նաև Կոստակին, Էլենին, Աթինան, Տասոն և փոքրիկ Բեբին։

— Հե՜յ, — ուրախ կանչեց Տակին, — նոր տարի է, գիտե՞ք, այսօր նոր տարի է։

— Գիտենք, — պատասխանեցին երեխաները։

Իսկ փոքրիկ-փոքրիկ Բեբին «յե, յե» արեց իր քրոջ՝ Էլենիի ձեռքից բռնած։

Այդ պահին Յողակին հագնված դուրս եկավ տնից, մի քանի անգամ թավալվեց ձյան մեջ, չափեց իր հասակը և մոտեցավ ընկերներին.

— Ի՞նչ ենք անում, — ասաց նա զվարթորեն։

— Նոր տարի է, — ասաց Կոստակին։

— Ես մի շաբաթ առաջ գիտեի, որ նոր տարի է, — ասաց Աթինան։

— Իսկ ես տաս օր առաջ գիտեի, — մեջ ընկավ Էլենին։

Ես էլ նրանց աղմուկից դուրս էի եկել ու մոտեցել խմբին։

— Բարի լույս, Քառո, — ասաց փոքրիկ Կոստակին։

Նկ. Ա. ԲԵՔԱՐՅԱՆԻ



Իմ անունը Կարո է, բայց Կոստակին չէր կարողանում Կարո ասել ու Քառո էր ասում։ Ասենք, բոլոր հույն ընկերներս էլ ինձ Քառո էին կանչում։ Ես, իհարկե, չէի նեղանում։ Չէ՞ որ նրանք «ր» տառ չունեն։

— Քառո, շնորհավոր նոր տարի, — ասաց Տակին։

— Շնորհավոր լինի, — ասացի ես։

— Ի՞նչ ենք անում, — ասաց Ցոռղակին։

— Եկեք ձմեռ պապի սարքենք, — ասացի ես։

— Սարքենք, սարքենք, — ծափ տվեցին աղջիկները։

Տասոն և Կոստակին սկսեցին ձյուն հավաքել։

Ես էլ էի օգնում նրանց։

Էլենին մոտեցել էր բարձր ու փարթամ շենքին, որը գոռոզաբար իշխում էր մնացած փոքր ու ցածրիկ տնակներին. այնտեղ, լուսամուտի տակ, եղևնու ընկած ճյուղեր տեսնելով, նա մեզ ձայն տվեց.

— Եղևնի՜, եղևնի՜։

Բոլորս շուռ եկանք։

Նա բերում էր եղևնու փոքրիկ ճյուղերը։

— Տոնածառ սարքենք, — ասաց Աթինան։

Մենք ճյուղերը կանգնեցրինք և մի փոքրիկ ու խեղճ տոնածառ սարքեցինք։ Իսկ ձմեռ պապին իր բարձր հասակով հսկում էր ճյուղերին։ Նրա շուրջը գանված ձյունը ոտքերով տափակեցրինք ու մեզ համար խաղալու տեղ պատրաստեցինք։ Էլենին տոնածառի և ձմեռ պապի շուրջը նոր տարվա երգեր երգելով պար բռնեց։

Եղևնու ճյուղերի վրա խաղալիքներ չկային, լույսեր և ձյան փաթիլներ նույնպես չկային։ Բայց մեզ թվում էր, որ դա իսկական տոնածառ է։ Մենք այնպես բարձր էինք երգում եղևնու ճյուղերի շուրջը պար բռնած, որ թակում բոլոր երեխաները զարթնեցին, հետաքրքրությամբ իրենց գլուխները դռներից ու պատուհաններից դուրս հանեցին։ Հետո նրանք բոլորը տներից դուրս գլորվեցին, և մեր շրջապատը մեծացավ։ Աղմուկն ու ժխորը տիրեց թակում։ Անգամ մեծահասակները մեզ նայելով զվարճանում էին։

Միայն բարձր ու փարթամ շենքը լուռ էր. լուսամուտները փակ էին, շքեղ վարագույրները իջեցրած, ծածկված։

Մեզ համար նշանակություն չուներ, որ բարձր ու փարթամ շենքը լուռ էր, և նրա լուսամուտները փակ էին։

Մեր խումբը մեծանում էր։ Երեխաները հետըզհետե գալիս միանում էին մեզ։ Մենք զվարթ ու երջանիկ՝ պարում, երգում, ճչում ու գլորվում էինք սպիտակ գետնի վրա։

Ի՞նչ փույթ, որ սառնամանիք էր։ Մեր ձեռքերն ու ոտքերը սառել էին։ Մենք ցուրտ չէինք զգում։

Այդ պահին հեռվից լսեցինք մանկական ուրախ մի երգ։

— Վու՛րցա, Վու՛րցա, արի, արի՛, — կանչեցինք բոլորս՝ չափազանց ուրախացած, լսելով փոքրիկ թափառաշրջիկի երգը։

(Վուրցա՝ խոզանակ էր նշանակում. նրա իսկական անունը չգիտեինք, բայց այդ չէր խանգարում, որ մենք նրան անչափ սիրեինք, նա էլ մեզ փոխադարձաբար ընկեր լիներ՝ լավ ընկեր)։

Միշտ ուրախ ու անհոգ, միշտ կիսաքաղց ու երջանիկ Վուրցան մեզ մոտեցավ։ Նրա հագուստները այնքան մեծ էին, որ կարծես չէր քայլում, այլ գլորվում էր։

Նա ցնցոտիների գրպաններից շաքարեղեն հանեց և մեզ բոլորիս էլ բաժանեց։ Մենք նրան չհարցրինք, թե որտեղից էր գտել այդ շաքարեղենը։ Նա միշտ էլ ունենում էր, և մենք միասին էինք ուտում։ Ես երբեք չէի տեսել, որ նա էժանագին շաքարեղեն կամ շաքարահաց ուտեր։ Իսկ գնել՝ մենք երբեք չգիտեինք՝ ե՞րբ և որտեղի՞ց է նա գնում։

Մենք շաքարեղենը կերանք։ Շատ քաղցրահամ էր, հաճելի... Ափսոս, որ մեկ-մեկ հատ հասավ յուրաքանչյուրիս։

— Լա՜վ էր, — մռմռաց Տակին։



— Լա՞վ էր, — ասացի ես։

— Սկսե՛նք, — բարձր սուլեց Վուրցան և սկսեց մեզ հետ պարել, ցատկել, գլորվել, զանազան խեղկատակություններով երգել ու տոնել նոր տարին։

Մենք չափազանց ուրախ էինք։

Հանկարծ բարձր ու փարթամ շենքի դռնից Իոնը դուրս եկավ։ Նա բարձր ու փարթամ շենքի փոքրիկ տղան էր։

Իոնը վախվխելով մոտեցավ։ Մեզանից քիչ հեռու կանգնեց, և նախանձով սկսեց մեզ նայել։

Ես վերև նայեցի և լուսամուտի վարագույրների արանքից տեսա նրա խաղալիքներով ու լույսերով զարդարված տոնածառը։ Ճրե՞ղ... այո, շատ շքեղ էր տոնածառը։

Իոնը, իհարկե, երջանիկ էր։

Իհարկե, մենք էլ էինք երջանիկ։

Նա կամաց-կամաց ավելի մոտեցավ մեզ։ Ուզեց իմ ձեռքից բռնել, որ պարի։

Ես չթողեցի։

— Ես էլ խաղամ, — աղաչեց նա։

— Ո՛չ, — կտրուկ պատասխանեցի ես։

— Դու քեզ համար տոնածառ ունես, — ասաց Յոդակին, նրանց լուսամուտի վարագույրների արանքից՝ խաղալիքներով ու լույսով զարդարված տոնածառը ցույց տալով։ Բայց նա լուսամուտին չնայեց, Իոնին նայեց.

Իոնը խեղճ-խեղճ կանգնել էր։ Մենք ավելի էինք ոգևորվել։ Գլորվում ու ճչում էինք, մեզանից երգեր հորինում ու սովորած եղանակով երգում։

— Մեղք է, թող նա էլ մեզ հետ խաղա, — ասաց ինձ Աթինան, Իոնի կողմը նայելով։

— Դե, թող խաղա, — ասացի ես։

— Արի խաղա՛, — հրամայեց Վուրցան։

— Թող խաղա, նոր տարի է, բոլորս ուրախ ենք, թող խաղա, — ասաց Տակին շնչասպառ և շուռ գալով՝ նորից սկսեց արագ շուրջպարը։ Չէ՞ որ նրա, իմ, Կոստակիի, Աթինայի, Յոդակիի և Էլենիի ծնողները մեզ էին նայում և ուրախանում մեր խաղերով։

Իոնը մտավ շուրջպարի մեջ, սկսեց պարել՝ սկզբում ամաչելով, քաշվելով, ինչ-որ անհարմար զգալով։

Ոչ ոք նրան չէր նայում։

Նա քաջալերվեց ու սկսեց վազվզել, պարել, ցատկել, երգել, գլորվել ու ճչալ։

Նրա մայրը բարձր լուսամուտից նրան էր կանչում, զայրանում, սպառնում ու հանդիմանում։

Իսկ Իոնը՝ բարձր ու փարթամ շենքի փոքրիկ տղան, վազվզում էր, պարում, ցատկում, երգում, ճչում, գլորվում, ինչպես մենք ու շրջմոլիկ-խեղկատակ Վուրցան։

Բոլորս տոնում էինք նոր տարին։

Ն. ՆԵԿՐԱՍՈՎ

# ՎՈԼԳԱՅԻ ԱՓԻՆ

(Վալեժնիկովի մանկությունը)

Հատված

Ես մեծացել եմ, ինչպես շատերը,
Մեծ գետի ափին, հեռու մի վայրում,
Այնտեղ, ուր միայն կտցարն է կանչում,
Խուլ աղմկում են եղեգնուտները,
Ճերմակ թռչուններ լուռ շարքեր կազմած,
Գորշ ավազուտի շրթին են կանգնած՝
Որպես արձաններ կամ շիրմաքարեր.
Ուր հեռո՜ւ հեռվում ընկած են սարեր,
Եվ անտառն անվերջ, անծայր, կապուտակ,
Ծածկում են երկնի այն կողմը հստակ,
Ուր լույս ցերեկի ուղին բոլորած՝
Արևն է իջնում դալկացած, հոգնած:
Ես սրտոտ էի մանուկ օրերից,
Մարդկանց եղբայրներ էի համարում,
Վախել չարքերից, սատանաներից
Ես դադարեցի դեռ վաղ հասակում:
Մի անգամ այսպես սաստեց իմ նանը.
«Մութը որ ընկավ՝ նստի՛ր դու տանը.
Չար գա՛յլն է դրսում, իսկ այգու խորքում
Սատանանե՛րն են լճում զբոսնում»:
Հենց նույն գիշերը մտա մեծ այգին—
Ոչ թե կարոտած սատանաներին,
Այլ սոսկ տեսնելու տենչով ծարավի:
Քայլում եմ մենակ: Գիշերն, հիրավի,
Կարծես թե լի է աչքերով հազար,
Կարծես թե դիտմամբ աշխարհը արար
Իսպառ պապանձվել դիտում է լռիկ,
Թե ինչ բանի է տղան այս փոքրիկ:
Եվ այդ անդորրում՝ զուսպ, ամենատես՝
Քայլերս փոխել դժվա՜ր էր այնպես...
Մեր տունը արդյոք չվերադառնա՞մ.
Վա՜յ թե ինձ քարշ տա խորքերն անհատակ,
Ստիպի ապրել ցուրտ ջրերի տակ՝
Լճից դուրս նետված մի սև սատանա:
Սակայն ես նորից մնացի այգում.
Լճակն է խաղում լուսնի շողերով,
Արտացոլում են ջրերի խորքում
Ափի ծառերը խիտ-խիտ շարքերով:
Լճափին կանգնած սպասեցի քիչ.
Ու ականջ դրի—չլսվեց ոչինչ.
Քայլեցի շուրջը ես երեք անգամ—
Բնավ չերևաց ջրում սատանան:
Հետո նայեցի էն մութ ծառերի,
Կուտուկների խավար արանքով,
Որ աճել էին ափի երկայնքով.
Դիտեցի խորքը խաղաղ ջրերի.
Չկա՞ նա արդյոք թաքստի միջում.
Սոսկ եղջյուրներից հեշտ են ճանաչում:
Եվ չկա ոչ ոք: Դիտմամբ համրաքայլ
Թողի հեռացա լճափից մուայլ:
Գիշերն ապարդյուն անցավ ինձ համար,
Բայց եթե մեկը՝ թփում թաքնված,
Ընկեր կամ ոսոխ՝ զոռգոռար հանկարծ,
Կամ անակնկալ օդը խոյանար
Ինձնից ահարեկ բուն գիշերային,—
Երևի մեռած ընկնեի գետին:

Թարգմ. Ս. ՍՈՒՔԻԱՍՅԱՆ






## ԿՈՐԱԾ ՇՈՐԵՐՆ ՈՒ ԱՆՍՊԱՍԵԼԻ ՕԳՆՈՒԹՅՈՒՆԸ

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

*Քաղաքի կենտրոնական փողոցներից մեկում, մայթի վրա կանգնել էին երկու տղա։ Նրանցից մեկը կարճահասակ էր, մանր, շարժուն աչքերով։ Նեղ ճակատի վրա թափվել էին սև գանգուրները, իսկ փոքրիկ-քիթը գրեթե չէր երևում ուռած թշերի արանքում։ Մյուսը շատ բարձրահասակ էր։ Նրան նայողը առաջին հերթին տեսնում էր մեծ-մեծ ականջները, որոնք արևածաղկի լայն տերևների պես կախված էին ուսերի վրա։ Բիզ-բիզ մազերով գլուխը նման էր անծրևից հետո ուժեղ քամու տակ ընկած հորթի գլխի։ Իսկ ամենից ծիծաղելին նրա հագուստն էր։ Վերնաշապիկը հազիվ էր մտել ահագին գլխից, ու կոճակները կանգնել էին ծնոտի տակ։ Նեղ թևքերի միջից կախ էին ընկել ոսկրոտ բազուկները, իսկ հասակի համար չափազանց կարճ շալվարի տակից ձգվում էին նիհար սրունքները։*

*Երկայնահասակը Մակարն էր, որին իրենց դասարանի մյուս Մակարից տարբերելու համար Երկար Մակար էին ասում, իսկ կարճահասակը Պստիկ Խոստիկն էր։*

*— Բա՛ց թող, որ ասենս, այդտեղով չեմ գա։ Գիտեմ, դու ուզում ես, որ Սաթիկն ու Գագիկն էլ ինձ այսպես տեսնեն, — ասում էր Մակարն ու փորձում ազատել թևը, որը պինդ բռնել էր Խոստիկը։*

*— Գնանք, — առաջարկում էր ընկերը, — նրանք հիմա տանը չեն լինի, եթե լինեն էլ՝ այնպես կանցնենք, որ քեզ չտեսնեն։*

*— Չա՛, խաբում ես, չեմ գա, կանցնեմ մյուս մայթը։*

*— Չես կարող, միլիցիոները կանգնած է…*

*— Կվազեմ, տեսնու՞մ ես, նա այս կողմը չի նայում, — ասում էր Մակարն ու տեղից չէր շարժվում. երևում էր, որ վախենում է։*

*Անցորդները անտարբերությամբ չէին կարող անցնել այդ տարօրինակ ընկերների կողքից. նայում էին ու ծիծաղում։ Զգալով, որ բոլորն իր վրա են ծիծաղում, Մակարը հանկարծ պոկվեց տեղից ու սկսեց վազել դեպի մյուս մայթը։*

*Միլիցիոների սուլեց։ Մարդիկ բրբջացին։*

*Մակարն անաբեկված կանգ առավ, ավելի շփոթվեց ու նորից սկսեց վազել։*

*Դիմացից էլ սուլեցին։*

*Մակարը կանգնեց, վախեցած նայեց չորս կողմը, ապա ետ-ետ գնաց ու քիչ մնաց ընկներ ասֆալտի վրա։ Միլիցիոները մոտեցավ նրան։*

*— Ա՛յ տղա, հո կրկեսից չե՞ս փախել։*

*— Ո՛չ, ո՛չ, ընկեր միլիցոներ, ես… ես… — լեզուն կապ գցելով պատասխանեց Մակարը, — ես կրկեսում չեմ… ես ուզում էի այստեղից… որովհետև…*

*Եվ էլի ինչ-որ բացատրություններ էր ուզում նա տալ, բայց միլիցիոները նրան չլսեց։ Խեթ հայացքով Մակարին ոտքից գլուխ չափելուց հե-*



տո ժպտաց քթի տակ ու, ցույց տալով անցուղին, ասաց.

— Դե այժմ ետ դարձիր քո եկած տեղը և կանգնես, ա՛յ, այնտեղից։

Մակարը գլխիկոր, հարբածի նման երերալով վերադարձավ։

— Դե գնա, լրիվ խայտառակվեցիր, քեզ չասացի՞, որ չի կարելի, — հոխորտաց Խոստիկն ու ավելացրեց, — գնա՛ ներ։

Առջևից հպարտ-հպարտ գնում էր Խոստիկը և անվերջ շուրջն էր նայում։ Նա շատ էր ցանկանում, որ իրենց դասընկերներից մեկն ու մեկը հանդիպեր և այդ վիճակում տեսներ Մակարին, բայց վերջինիս բախտը բերում էր։

Իսկ Մակարը իր վրա զգալով զբոսանքի դուրս եկած անցորդների ծաղրական հայացքները, ամոթից աշխատում էր իր երկար հասակով թաքնվել կարճ ընկերոջ հետևում։

* * *

Այդ օրն էլ Մակարը սովորականի նման մենակ էր գնացել գետափ։ Լողանալուց հետո, երբ նա դուրս եկավ ջրից և ուզում էր հագնել շորերը, հանկարծ ականջի տակ լսեց ձիու խրխինջ։ Նրան մոտենում էր մի ձիավոր աղջիկ։

— Վա՛յ—ճչաց Մակարը, պտույտ գործեց կանգնած տեղում և շփոթված իրեն գցեց ջուրը։

Մերկ տղան իր ճիչով ու տարօրինակ շարժումներով այնպես խրտնեցրեց իր դեմ հանկարծակի ելած ձիուն, որ վերջինս ծառս եղավ ու կատաղի փնչոցներով առաջ սլացավ։

Աղջիկը ամուր կպավ ձիու մեջքին ու սանձը ձգելով հեռացավ, մտքում ծիծաղելով տղայի վրա։

«Վա՜յ, ինչ ամոթ էր, խոմ ինձ չտեսա՞վ — գլուխը ջրի տակից հանելով՝ ինքն իրեն ասաց Մակարը։ — Որտեղի՞ց ծլեց էդ աղջիկը, կարծես գետնի տակից դուրս եկավ»։

Նա, զգուշությամբ շուրջը նայելով, դանդաղ դուրս եկավ ջրից, վերցրեց այս ու այն կողմը ընկած կոշիկներն ու նասկիները, մտածկոտ շուռումուռ տվեց դրանք ու գցեց ավազի վրա. ասես թևերը թուլացան։ Նոր միայն զգաց, որ ձին անցավ իր շորերի վրայից և խրտնելիս ինչ-որ բան տարավ ոտքերի հետ։ Նա կուզեկուզ իջավ գետի հոսանքն ի վար, փնտրեց ամեն տեղ, բայց շորերը չգտավ։ «Երևի ջուրն են ընկել», անցավ Մակարի մտքով, և նա տխուր ու գլխիկոր վերադարձավ իր տեղը ու, չիմանալո՞վ ինչ անել, մտավ ջուրը։ Նա շորերի մասին այնքան էլ չէր մտածում։ Նրան մտատանջում էր այն հարցը, թե ինչպես պիտի քաղաք վերադառնար։ Ու տխրել էր Մակարը, այնպես էր տխրել, որ քիչ էր մնում լաց լիներ։

Երբեմն նա չէր հավատում, թե շորերը կորել են և, դուրս գալով ջրից, սկսում էր փնտրել։ Մի քիչ այս ու այն կողմը նայելուց հետո նա հուսակտուր վերադառնում էր կոշիկների մոտ, որոնք ասես զգալով տիրոջ վիշտը, խեղճ-խեղճ նայում էին Մակարին։

Մոտերքում ոչ ոք չկար։ Միայն լսվում էր հեռ-

վում լողացող երեխաների ուրախ աղմուկն ու կանչը։ Մակարը նախանձում էր նրանց։ «Այ, եթե ես էլ նրանց հետ լինեի, նրանք մի բան կանեին», մտածում էր նա ու կյանքում առաջին անգամ զգում, որ ինքը մենակ է՝ ընկերներ չունի։

«Վա՜յ, վա՜յ, կեսօրն էլ անցավ, ի՞նչ պիտի անեմ, հո չե՞մ կարող այսպես մերկ-մերկ քաղաք վերադառնալ», արևին նայելով հալվում էր Մակարը։ «Իսկ եթե լողալով գնամ տղաների մոտ... Հը՛, չգնա՞մ, գուցե նրանք մի բան կտան հագնելու», ինքն իրեն հարցնում էր Մակարը, բայց մի ներքին ձայն արձագանքում էր. «Ոչ, ոչ, նրանք կըծիծաղեն ինձ վրա, գուցե և մեր դպրոցից էլ տղաներ լինեն, օյ, օյ, օ՜յ, չեմ գնա, չեմ գնա, նրանք վաղն ինձ ամբողջ դպրոցում խայտառակ կանեն, ոչ, ոչ, պետք չէ», կրկնում էր նա գրեթե բարձրաձայն ու զգում, որ սկսում է մրսել, չնայած ջուրը տաք էր։

Հեռվում լողացող երեխաները սկսել էին խմբերով տուն վերադառնալ, բայց ոչ ոք չէր անցնում նրա մոտից։

Հուսահատությունից Մակարի սիրտը կտոր-կըտոր էր լինում, նա ուզում էր դուրս գալ ջրից, գոռալ, օգնություն կանչել, բայց...

Հանկարծ նա ոտնաձայն լսեց ու իսկույն սուզվեց ջրի մեջ։

«Անցան, անցան, ովքե՞ր էին», շշնջաց Մակարն ու գլուխը կամաց դուրս հանեց ջրի տակից։ Գետեզերքով անցնում էին երեք տղա. Նրանք լողանալու տեղից էին վերադառնում։

Մակարը նայեց նրանց ետևից ու մատը կծեց. «Ինչ լավ է, որ ինձ չնկատեցին, օյ, օյ, օ՜յ, այն մեկը մեր դասարանի Խոստիկն է... Բայց, բայց կարծես վերևում էլ ոչ ոք չի մնացել, ու ես մենակ... մենակ...», շնչակտուր կրկնեց նա այս անկապ բառերն ու ինքն էլ չիմացավ, թե ինչպես բերանից դուրս թռավ.

— Խոստի՜կ...

Տղաները չշրջվեցին, որովհետև Մակարն այնպես արտասանեց այդ անունը, որ հազիվ ինքը լսեց։

— Խոստի՜կ...— կրկնեց Մակարը, բայց այս անգամ էլ նրա ձայնը չհասավ տղաներին։

Մակարը նորից նայեց շուրջը ու զգաց, որ ոտքերը դողում են։

Նա մի քանի քայլ առաջ գնաց, ապա կանգ առավ ու նայեց շուրջը։ Նրան թվում էր, թե ահա մութն ընկնում է, և քարաժայռերի արանքներից դուրս են թափվում սոված գայլերն ու պատառ-պատառ անում մերկ մարմինը։

— Խոստի՜կ,— գոռաց նա իր ամբողջ ձայնով։

Տղաները ետ շրջվեցին ու վազեցին դեպի նա։

— Վա՜յ, էդ դո՞ւ ես, Երկա՛ր, պրիվետ, էլի մենա՞կ ես եկել լողանալու,— ձեռքերը կողքերին դնելով ու հպարտ կեցվածք ընդունելով հարցրեց Խոստիկը։

Մակարը կարծես փոշմանեց կանչելու համար. «Դե, մի՞թե ես չգիտեի այդ պարծենկոտին, որը



միշտ ծիծաղում է ինձ վրա, ինչո՞ւ կանչեցի...»։ Այս միտքն էր այդ պահին կարդացվում ջրի մեջ կուչ եկած Մակարի դեմքին։

— Դե, ձայն հանիր, հո ոսկե ձկնիկ չկա ոտքերիդ տակ, ինչո՞ւ չես շարժվում։

Մակարը շարունակում էր լռել։

Խոստիկը ձեռքերը ցած թողեց ու պպզեց ջրի ափին, կարծես ավելի մոտիկից տեսնելու նրան։ Եվ, իրոք, նա առաջին անգամ Մակարին այդպես խեղճացած տեսնելով, մի տեսակ հուզվեց, խղճաց նրան ու մտերմաբար շշնջաց.

— Ասա, ի՞նչ է եղել...

Նրա ձայնի մեջ հարազատություն զգալով, Մակարը ինչ-որ բան շշնջաց...

— Արմե՛ն, Գագի՛կ, դուք գնացեք մի քիչ հեռու, ա՛յ, այնտեղ,— մատով ցույց տվեց Խոստիկը։

Տղաները, որոնք Խոստիկից փոքր էին, առանց ձայն հանելու հնազանդվեցին։ Մակարը մի անգամ էլ շուրջը նայեց, կարծես ստուգելու, թե, իրոք, ոչ ոք չի՞ լսում իրենց։

— Խոստիկ, շորերս ջուրը տարել է,— փսփսաց նա ու զարմանքով նկատեց, որ հակառակ իր սպասածի, Խոստիկը չծիծաղեց, այլ դեմքին ավելի լուրջ արտահայտություն տալով հարցրեց.

— Իսկ ինչպե՞ս տարավ...

— Այդ մասին հետո, հիմա ի՞նչ անեմ ես...

— Դո՛ւ ասա, ինչո՞վ կարող եմ քեզ օգնել։

— Դու, դու,— կմկմաց Մակարը,— գնա մեր տանից շորեր բեր...

— Լավ, դրանից էլ հեշտ գո՞րծ,— ծոծրակը քորելով պատասխանեց Խոստիկը ու մեծավարի շուրջը նայեց,— հենց հիմա։

Խոստիկը ոտքի կանգնեց, բայց Մակարը վարանոտ հայացքով նայեց նրան ու գլխով նորից ցույց տվեց տղաներին։

— Հեյ, դրանք քեռուս տղաներն են, բերել էի լողալ սովորեցնելու, ինչո՞ւ դու էլ վերևը չես լողանում, գիտե՞ս ինչ հիանալի լողարան ենք պատրաստել, էս ի՞նչ է էստեղ, որ...



Այդ խոսքերը Մակարի ուղեղին չէին հասնում, նա միայն մի բան էր մտածում. «Իսկապես Խոստիկը կգնա, կբերի՞, թե...»։

Խոստիկը գնաց։

— Խնդրում եմ շուտ գաս,— նրա ետևից թախանձեց Մակարը։

— Աչքիս վրա, Երկա՛ր, աչքիս վրա,— գլուխը շարժեց Խոստիկն ու սկսեց վազել։

«Վա՜յ, Երկա՛ր, վա՜յ, տեսնես ինչպե՞ս է եղել, որ շորերը ջուրն է գցել...», մտածում էր Խոստիկն ու ծիծաղում։

Իսկ Մակարը, ոչ մի հույս չունենալով, որ Խոստիկն իր համար շորեր կբերի, նայում էր շուրջը՝ ուրիշ մարդ գտնելու հույսով, բայց շրջակայքում մարդիկ չտեսնելով, սպասում էր Խոստիկին...

«Չեկավ, չեկավ», աչքը ճանապարհից չկտրելով, վշտանում էր Մակարը։ Նրան թվում էր, որ վաղուց, շատ վաղուց է գնացել Խոստիկը և, իհարկե, չի վերադառնալու։ «Իմ վերջն էլ այսպես է լինելու, ինձ այսօր գայլերը պատառ-պատառ կանեն», մտածում էր Մակարը։ Ապա աչքի առաջ պատկերանում էր Խոստիկը. ահա նա իրենց բակում կանգնած ծիծաղելի շարժումներով պատմում է իր մասին, և բոլորը քրքջում են...

— Ուռա՜,— դեռ հեռվից լսվեց Խոստիկի ձայնը։

Բայց Մակարը նրան տեսնելով, չուրախացավ, այլ երկյուղն այնպես սաստկացավ, որ քիչ մնաց ուշագնաց լիներ։ Խոստիկի ձեռքին ոչինչ չկար...

— Քո տունը չքանդվի, հա՜,— ձեռքը պարզելով խոսեց Խոստիկը,— ինձ ուղարկում ես ձեր տուն ու չես էլ ասում, որ դուռը փակ է։

— Վա՜յ, ձեռքը գլխին խփեց Մակարը,— բանալիներն էլ շալվարիս գրպանումն էին...

— Ը՜մ,— գլուխը տարուբերեց Խոստիկը,— ձեր հարևանուհին ասաց, որ ձերոնք ինչ-որ տեղ հյուր են գնացել, և դուռը դու ես փակել։ Դե, վեր կաց, վեր կաց, գնանք...

Մակարը վախեցած ու զարմացած նայեց Խոստիկին։

— Ինչպե՞ս։

— Դե, հենց այդպես, էլ ինչպե՞ս։ Ի՞նչ կա որ։ Մարդիկ կտեսնեն, որ մերկ ես, իրենք կամաչեն ու քեզ չեն նայի։ Ինձ համար ավելի ամոթ կլինի... Վեր կաց, գնանք, ուշ է։

— Յա՜, ի՞նչ ես ասում,— հուսահատ ասաց Մակարն ու դեմքը ծռմռեց։

— Դե, մնաս բարով, իմ Երկար բարեկամ, քո կյանքը, բոյիդ հակառակ, կարճ պետք է լինի, քեզ այսօր...ֆֆո՜ւյթ...— փշտացրեց Խոստիկը, ձեռքը թափ տվեց օդի մեջ ու քայլեց։

Մակարն հազիվ էր զսպում արցունքները։

Մի քանի քայլ գնալուց հետո Խոստիկը քարերի արանքից վերցրեց մի թղթի փաթեթ ու ետ վերադարձավ։



— Խնդրե՛մ։

Մակարի աչքերում ուրախության արցունքներ երևացին։ Նա դուրս եկավ ջրից.

— Վա՜յ, սրանք իմ...

— Այո, այո, ո՞նց կարող էին քոնը լինել, չէ՞ որ ձեր դուռը փակ էր, ես էլ իմ շորերից եմ բերել...

Մակարը ձեռքի մեջ տնտղում էր շորերը.

— Սրանք իմ...

— Ա՛հ, հասկանում եմ, ուզում ես ասել, որ քո վրայով չեն լինի, դրանք են իմ ունեցածը, ուզու՞մ ես, հագիր, ուզում ես՝ ոչ...— Ապա մի փոքր լռելուց հետո, ավելացրեց.— Հագիր, հագիր, սա նոր ձև է, ճիշտ եմ ասում, Հնդկաստանի երեխաներն այդպես կարճ են հագնում, ա՛յ, այսպես, ճիշտ ու ճիշտ քեզ նման, օխա՜յ, մեռնեմ երկար բոյիդ, ոնց էլ սազում է,—ասում էր Խոստիկն ու օգնում Մակարին, որ կարողանա հագնել իր համար այնքան փոքր շալվարն ու վերնաշապիկը։

Վերջապես հագավ։ Շալվարի փողքերը բարձրացան մինչև ծնկները, իսկ վերնաշապկի թևքերը հասան արմունկներին։

Մակարն ինքն էլ էր զգում, որ այսպես շատ ծիծաղելի է դարձել, բայց ի՞նչ կարող էր անել. շրջակայքի ամեն մի քարն ու թուփը նրան գայլի աչքեր էին թվում։

— Ա՛ռ, սա էլ հրաշքով փրկված կոշիկներդ,— հազիվ ծիծաղը զսպելով ասաց Խոստիկը և նրան մեկնեց կոշիկները,—շուտ-շուտ հագիր, ուշ է։

Մի քանի րոպե հետո նրանք արդեն քայլում էին քաղաք տանող նեղ ճանապարհով։

Մակարն իր երկար ոտքերն այնպես էր գցում, որ ընկերը հազիվ էր հասնում նրա ետևից։

— Լսի՛ր, ես քեզ ջրից հանեցի, որ հիմա ետևիցդ վազե՞մ, կամաց գնա,—հևալով զգուշացնում էր Խոստիկը։

Բայց մի քիչ գնալուց հետո Մակարը նորից արագացրեց քայլերը։ Խոստիկը ստիպված եղավ մտնել նրա թևը։

— Դե, բարեկամս, հիմա պատմիր, թե ինչպե՞ս եղավ, որ ջուրը տարավ շորերդ։ Երևի ձեռքիցդ ընկան, և դու էլ վախեցար ջրի խոր տեղերը մըտնել։ Չէ, ես քեզ լավ լողալ պիտի սովորեցնեմ։ Ասենք, թե ջուրն է ընկել մի երեխա, ուրեմն դու երկար բոյովդ պիտի կանգնես ու նայե՞ս...

— Է՜, դու էլի սկսեցիր ճառել, ախր այդպես չի եղել,—ասաց Մակարն ու սկսեց պատմել շորերի անհայտանալու ամբողջ պատմությունը։

— Վա՛յ, Մակար, վա՛յ—նրան լսելուց հետո ձեռքի ափերն իրար խփեց Խոստիկն ու ամբողջ կոկորդով ծիծաղեց։

Այդպես զրուցելով նրանք հասան քաղաք։

* * *

Մակարը ազատ շունչ քաշեց միայն այն ժամանակ, երբ մտան իրենց նրբանցքը։ Այդտեղ մարդիկ քիչ կային։

Ահա և Մակարենց բակը։ Երեխաներն իսկույն նկատեցին նրանց ու միանգամից աղաղակեցին.

— Վա՜յ, վա՜յ, Մակարին նայեք, ի՞նչ է հագել, Մակարն էլ նոր ձևի ստիլյագ է, տղերք...

*Այս ու այն կողմից մոտեցող երեխաներն սկըսեցին բրբջալ։*

*— Նայեք, Երկար Մակարը ինչ է դարձել, ոնց որ Անիման տատիկի աքլորը լինի...*

*Բայց Մակարը, կարծես, նրանց չէր լսում։ Նա շտապում էր որքան կարելի է շուտ տուն հասնել։ Վերջապես նրանք փայտե աստիճաններով բարձրացան պատշգամբը։ Դուռը դեռ փակ էր։*

*Մակարը հազիվ տեղավորվեց պատշգամբի անկյունում դրված հնամաշ բազմոցի մեջ, ու նրան թվաց, թե նոր միայն դուրս եկավ ջրից։*

*Ընկերները նայեցին միմյանց ու երկուսն էլ ծիծաղեցին։ Խոստիկը ծիծաղում էր երկար, զիլ ձայնով, մերթ-մերթ գլուխը թափահարելով ու ձեռքերը ծնկներին խփելով։*

*Այսօր Խոստիկի ծիծաղը չէր վրդովեցնում Մակարին, ընդհակառակը, նույնիսկ դուր էր գալիս։ Մինչ՝ այդ, Մակարը կարծում էր, թե Խոստիկը իրեն միայն ծաղրել կարող է, իսկ այժմ...*

*— Չէ՞ր սպասում,— հարցրեց Խոստիկը։*

*— Ի՞նչ։*

*— Որ ես շորերդ կբերեի։*

*Մակարը տատանվեց։ Նա անմիջապես չկարողացավ կողմնորոշվել, թե որն ավելի դուր կգա Խոստիկին. մի պահ լռելուց հետո ասաց.*

*— Սպասում էի, բայց...*

*— Էլ ի՞նչ բայց։*

*— Վախենում եմ, այս մասին վաղը դասարանում պատմես...*

*— Լսի՛ր, Մակար,— ձայնը բարձրացնելով ու վճռական տոնով սկսեց Խոստիկը,— ուզում ես, արի մտերիմ ընկերներ դառնանք ու ամեն ինչ վստահենք իրար...*

*Մակարը զարմացած ոտքի կանգնեց, բայց ոչինչ չասած, նորից ընկավ բազմոցի վրա։*

*— Այո, այո, մտերիմ ընկերներ դառնանք,— նորից խոսեց Խոստիկը...— Դու ինձ կօգնես մաթեմատիկայի խնդիրները լուծելիս, իսկ ես քեզ՝ ամեն բանում և ամեն տեղ... Այո, այո, ի՞նչ է, որ ես դասարանում քեզ հետ կատակներ եմ անում, կարծում ես թե...*

*Մակարը մտքում կրկնում էր «հավատարիմ», «մտերիմ», «ընկերներ» բառերն ու խոսք չէր գտնում պատասխանելու։ Վերջապես զգալով, որ Խոստիկը պատասխանի է սպասում, հանդիսավոր կերպով մեկնեց ձեռքն ու ասաց.*

*— Հավատարիմ։— Մակարն ասես երդվում էր։*

*— Մի՛շտ հավատարիմ,— պատիվ առնելով ու զինվորական կեցվածք ընդունելով, պատասխանեց Խոստիկը։*




Լ. ՀՈՒՐՈՒՆՑ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Մեր կողմերը հարուստ են թռչուններով։ Բայց բոլոր փետրավորներից միայն ճնճղուկներն էին իսկական բարեկամություն անում մեզ հետ։ Մյուս թռչունները գալիս էին, գնում, բայց չէին կապվում մեր հողին, իսկ ճնճղուկները միշտ մեզ հետ էին, մեզ չէին լքում նույնիսկ ձմռանը։

Ձմռանը ճնճղուկը դանդաղաշարժ թռչուն է. համառությամբ հետապնդելու դեպքում, կարելի է անզեն ձեռքով էլ բռնել նրան։ Իսկ ամռա՞նը... Հապա մի փորձիր մոտենալ ճնճղուկին։ Ուրախ ոստյուններով նրանք թռչում են մի տեղից մյուսը, տեղատարափ թափվում ծառերի վրա։ Շատ աղմկոտ ու թեթևաշարժ են։

Երեխա ժամանակս, չգիտես ինչու, համոզված էի, որ ճնճղուկները ընտելանում են ոչ թե վայրերին, այլ մարդկանց։ Չէի կասկածում, որ կան մեր ճնճղուկներ և հարևանների ճնճղուկներ։ Լիովին համոզված էի, որ երբ մայրիկը բակում կանչում էր հավերին կուտ տալու, նրա կանչի վրա հավերի հետ մեկտեղ հավաքվում էին միմիայն մեր ճնճղուկները։ Ես մինչև անգամ տարբերում էի նրանց։

Իսկ որքա՞ն ձեռնասուն և խեղճ են նրանք ձմե-



ռը. մրսա՜ծ, գզգզվա՜ծ: Թե՞ ձևանում էին այդպիսին: Մի՞թե կարող ես գուշակել, թե ի՛նչ կա այդ խորամանկ ճուտիկների գլխում:

Մեր ճնճղուկները համեղ ուտելիքի մեծ սիրահարներ են: Սարերում ամառը միշտ էլ կարելի է քաղցր ու համեղ բան գտնել. այստեղ և՛ կեռաս կա, և՛ տանձ, խաղող, հոն, զկեռ: Ոչ մի մրգից նրանք չէին հրաժարվում, բայց հատկապես սիրում էին թութը: Սակայն չի կարելի ասել, թե շատակեր էին:

Ծառից ծառ թռչելով, չարաճճիորեն նրանք ցած էին թափում ահագին քանակությամբ հասած թութ: Փչացնում էին և ուրիշ մրգեր ու հատապտուղներ:

Այդ պատճառով էլ մեր տնեցիները ճնճղուկներին տանել չէին կարողանում և ամեն կերպ նրանց քշում էին այգուց: Իսկ ինչքա՜ն անեծք է թափվել նրանց գլխին միայն մեր տատիկից, էլ չեմ խոսում պապիկի մասին, որն ամբողջ օրը գոռգոռում էր նրանց վրա՝ «քշա՜, քշա՜» և ճոճում փայտը: Նույնն անում էին մեր համագյուղացիները: Եվ եթե այգիներում կամ բանջարանոցներում դուք տեսել եք խրտվիլակներ, ապա իմացեք, որ նրանք դրված են միմիայն ճնճղուկներին այդտեղից հեռու պահելու համար:

Ես ութ թե ինը տարեկան էի, երբ մեզ մոտ լուր տարածվեց. «Մորեխը գալի՜ս է»:

Ես առաջ էլ լսել էի այդ բառը, գիտեի, որ մորեխը նման է մեր ծղրիդներին, բայց ոչ մի ուշադրություն չէի դարձրել: Ղողանջեցին եկեղեցու զանգերը: Պապս, տատս, մայրս, ավագ եղբայրս, տան բոլոր մեծերը ձեռքն ընկածը վերցնելով դուրս թափվեցին փողոց: Մի րոպեում գյուղը դատարկվեց: Ծեր, երիտասարդ, բոլորը շարժվեցին մորեխին ընդառաջ:

Մորե՛խ... Ես չէի հասկանում, ինչո՞ւ էին վախենում մորեխից: Չէ՞ որ մորեխը դա նույնն էր, ինչ որ ծղրիդը: Բայց քանի որ գյուղում տագնապ էր, ես կռահեցի, որ պետք է տեղի ունեցել և ամբողջ ուժով նետվեցի մեծերի հետևից:

Ահա և ծղրիդի նման այդ մորեխը: Բայց ի՞նչ ծղրիդ: Սպիտակին տվող ահարկու լավա, որն իր ճանապարհին եղած փոսերն ու խրամատները լցնելով, շարժվում ու շարժվում էր առաջ:

Ես տեղ հասա, երբ մարդիկ ուժասպառ էին եղել, իսկ մորեխը գալիս էր ու գալիս: Ահա նա թավալգլոր իջավ կանաչ թմբից, ետևում թողնելով մերկ հողը: Ահա շարժվում է դեպի մյուս լանջը: Մեր գյուղի սահմաններին արդեն շատ մոտ է:

Ա՜յ թե ինչ բան է մորեխը: Եթե նա անցնի մեր հողով, մեր այգիներով ու դաշտերով, ամեն ինչ կդառնա այնպես, ինչպես այս մերկ թումբն է:

Բայց էլ որտե՞ղ: Հանկարծ երկինքը մթնեց: Վրա հասան ճնճղուկները անթիվ-անհամար երամներով և խոյսյն նետվեցին մարտի:

Ես հիմա էլ առանց երախտագիտության զգացմունքի չեմ կարող հիշել, թե ինչպիսի կատաղությամբ էին նրանք կռվում մորեխների դեմ: Հիշում եմ այդ մենամարտի մանրամասնությունները: Ճնճղուկները մորեխ չէին ուտում, միայն վնասում էին նրան: Մուրճի նման կտցահարում էին և քարշ տալիս գետնի վրայով, հետո նորից կտուցները իջեցնում էին մորեխի գլխին: Արյունը փայլատակում էր նրանց փետուրների և կտուցների վրա:

Մարտի տեղից ոչ հեռու, ուրախ կարկաչելով հոսում էր գետակը: Հոգնած ու արյունոտված թռչունները մի պահ կտրվելով մարտից, սուրալով անցնում էին ջրի միջով, թափահարում իրենց, ապա նորից նետվում կռվի: Ես նույնիսկ նկատեցի, թե ինչպես խմբերից մեկը մարտնչում էր, իսկ մյուս խումբը հանգստանում:

Մորեխը հաղթահարվեց: Ստանալով այդպիսի օժանդակություն, մարդիկ վերջ տվեցին մորեխին:

Հիմա ճնճղուկներին մեր գյուղում այգիներից չեն քշում, չեն անիծում: Նրանք հիմա էլ ամառը ուրախ խմբերով ծառից ծառ են թռչում, ցած են թափում հասած թութը, բայց ոչ ոքի մտքով չի անցնում նեղանալ նրանցից:

Նրանք վաստակել են այդ բարեկամությունը:










Ա. ԴԱՐԲՆԻ

Առվի լայնքը տղան չափեց,
Քարեր բերեց, կամուրջ կապեց։
Երկար պոչով մուկը անցավ—
Եվ կամուրջը դիմացավ,
Կաքավն անցավ—
Դիմացավ,
Կատուն անցավ—
Դիմացավ,

Շունը անցավ—
Դիմացավ,
Արջը անցավ—
Դիմացավ,
Ուղտը անցավ—
Դիմացավ,
Փիղը անցավ...
Վա՜յ, կամուրջը
Ծռվեց,
Փլվեց։







Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ





Փոքրիկ տղան մատը կծեց.
— Փիղը շատ է ծանր ու մեծ։
Պետք է ամուր կամուրջ շինել,
Հիմքում խոշոր քարեր դնել...
Մեր վարպետը աշխատեց լուրջ
Ու կառուցեց մի նոր կամուրջ։
Երկար պոչով մուկը անցավ—
Նոր կամուրջը դիմացավ.

Կաքավն անցավ—
Դիմացավ.

Կատուն անցավ,
Շունը անցավ,
Արջը անցավ,
Ուղտը անցավ,
Փիղն էլ անցավ—
Դիմացավ։









# ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶՈՒՄ

ԱՂԱՍԻ ԹՈՒՐԱՋՅԱՆ

*Մանկապարտեզ եմ գնում,*
*Գիտեմ երգել ու պարել,*
*Իմ անկյունը զարդարել,*
*Անկողինս հարդարել։*
*Ես ընկերներ ունեմ շատ,*
*Վազվզում ենք ու խաղում,*
*Մաքուր օդում ամեն օր,*
*Թռչկոտում ենք, ծիծաղում։*
*Իսկ Վաչիկը մեն-մենակ*
*Տխուր նստում է տանը*
*Ու չարչարում բարկացած՝*
*Խեղճ փիսիկին ու շանը։*



## Քրդական



# ՃԱՏՐՃՈՒՄԱՆԸ

*Լինում է չի լինում, մի պառավ է լինում։ Այդ պառավը շատ ոսկի է ունենում և անվերջ մտածում է, թե ինչ անի, որ դրանք չկորչեն։ Վերջը որոշում է այդ ոսկիներից մի թաս պատրաստել։ Թասը պատրաստելուց հետո ուզում է նրանով հարիսա ուտել և գալիս է Ամըր-Հալիսայի մոտ ու խնդրում.*

*— Ինչ կլինի իմ այս թասը լիքը հարիսա լցնես։*

*Երբ հարիսա ծախողը տեսնում է ոսկե թասը, շատ է ուրախանում և որոշում է տիրանալ դրան։ Այդպես էլ անում է։ Ոսկե թասի փոխարեն նա ուրիշ թասի մեջ հարիսա է լցնում և տալիս պառավին։ Պառավը սկզբում դա չի նկատում. միայն ուտելուց հետո է տեսնում, որ իր ոսկե թասի փոխարեն ուրիշն է տվել։*

*Զայրացած պառավը գնում է Ամըր-Հալիսայի մոտ և ասում.*

*— Աստված քեզ պատժի, ինչու ես իմ ոսկե թասը սրա հետ փոխել։*

# Ժողովրդական հեքիաթներ

Ամըր-Հալխան թասը չի տալիս, և պառավը գալիս է ու տխուր նստում իր դռանը: Այդ պահին երևում է ճարպիկ Շատրշումանը:

— Հը՞, ինչ է պատահել, ինչո՞ւ ես լալիս:

— Իմ դարդերը շատ են, ոչ ոք չի կարող բուժել,— պատասխանում է պառավը:

— Ասա, ես քո ցավերը կբուժեմ:

Պառավը պատմում է իր թասի պատմությունը: Շատրշումանը խոստանում է ինչ գնով էլ լինի նրան վերադարձնել ոսկե թասը և գնում է Ամըր-Հալխայի մոտ:

— Բարի օր, Ամըր-Հալխա,— ասում է նա,— քեզ ծառաներ պետք չե՞ն:

— Ոչ,— պատասխանում է խորամանկ Ամըր-Հալխան:

Շատրշումանը գնում է Ամըր-Հալխայի տուն և նրա կնոջն ասում.

— Քո ամուսինը ինձ ծառա է բռնել: Նա կարգադրեց, որ դու քսան հյուրի պատրաստություն տեսնես, մինչև նրա գալը:

Ամըր-Հալխայի կինը սկսում է պատրաստություն տեսնել, իսկ Շատրշումանը թաքնվում է միջանցքի դռան հետևում:

Երեկոյան Ամըր-Հալխան գալիս է տուն, տեսնում է պատրաստությունը և զարմացած հարցնում.

— Այս ինչ է, հարսանի՞ք է, քե՞ֆ է...

— Չէ՞ որ դու ես ծառային ասել, որ պատրաստություն տեսնեմ,— պատասխանում է կինը:

Ամըր-Հալխան ամեն ինչ հասկանում է:

— Դու ինձ ասա՝ ծառան գնա՞ց, թե՞ այստեղ է:

Կինը պատասխանում է, որ տեղյակ չէ:



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Ահա ոսկե թասը, որ վերցրել եմ պառավից,— ասում է Ամըր-Հալխան՝ ցույց տալով ոսկե թասը։— Այն մարդը, որ եկել էր քեզ մոտ, Շատրըշումանն է, թասը կտանի։ Վեր կաց դուռը փակենք և տունը ստուգենք, արդյոք այստեղ չէ՞։

Նայում են ամեն տեղ, բայց Շատրըշումանին չեն գտնում։

Ամըր-Հալխան ասում է.

— Ա՛յ կնիկ, ի՞նչ անենք. Շատրըշումանը թասը կտանի։ Արի թասը ջրով լցնենք և քնելիս դնենք մեր բարձի վրա, եթե Շատրըշումանը թասը վերցնի, մենք կարթնանանք ու կբռնենք նրան։

Այդպես էլ անում են։

Ճարպիկ Շատրըշումանը լսում է այդ ամենը, և երբ մարդ ու կին քնած են լինում, կամաց մոտենում է նրանց, որ թասը վերցնի։ Բայց ջուրը թափվում է Ամըր-Հալխայի երեսին և արթնացնում նրան։

Շատրըշումանը անհայտանում է։ Ամըր-Հալխան գիտեր, որ նա թասը կտանի կտա պառավին, և կարճ ճանապարհով շտապում է նրա տունը։ Տուն հասնելով, նա հին շորեր է հագնում ու պառավի պես ինքնիրեն մրթմրթում։

Շատրըշումանը գալիս է և ասում.

— Ահա քո թասը, պառավ։

Ամըր-Հալխան թասը վերցնում է։ Շատրըշումանը մի փոքր հեռանալուց հետո մտածում է. «Չլինի՞ Ամըր-Հալխան էր թասը վերցնողը»։ Ետ է դառնում պառավի մոտ և հարցնում.

— Պառավ, քո թասը բե՞զ տվեցի։

— Մատաղ, դու ինձ ե՞րբ ես թաս տվել,— պատասխանում է պառավը։

Շատրըշումանը գլխի է ընկնում, որ Ամըր-Հալխան իրեն խաբել է, և վազում է նրա տուն, հագնում նրա կնոջ շորերը, վերցնում ծծկեր տղային, դուրս գալիս և սկսում է երեխային կամթել։ Երեխան լաց է լինում, Ամըր-Հալխան գալիս է և հարցնում.

— Ա՛յ կնիկ, ի՞նչ է պատահել, որ դուրս ես եկել։

Շատրըշումանը կամացուկ պատասխանում է.

— Դու որ գնացիր Շատրըշումանի ետևից, կովը դուրս եկավ ու փախավ։

— Դե առ թասը, իսկ ես գնամ կովը բերեմ,— ասում է Ամըր-Հալխան։

Շատրըշումանը, որ նրա կնոջ կերպարանքն էր ընդունել, թասը վերցնում է։ Ամըր-Հալխան մի քիչ գնում է և մտածում. «Չլինի՞ թե ես թասը տվեցի Շատրըշումանին»։ Ետ է դառնում և տեսնում, որ դռանը ոչ ոք չկա, իսկ ներսում կինը քնած է։ Նա շատ է զայրանում և քացով խփում է քնած կնոջը։

— Ո՞ւր է թասը,— գոռում է նա։

— Ի՞նչ թաս։

«Ուրեմն Շատրըշումանն է թասը տարել», մտածում է Ամըր-Հալխան։

Շատրըշումանը նույն երեկոյան թասը տանում է և տալիս պառավին։






Հին Քրդստանում մի թագավոր կար։ Սա շատ էր սիրում հագուստը փոխած շրջել երկրում։

Օրերից մի օր այս թագավորը հրամայում է իր վեզիրին, որ հագուստը փոխի, ինքն էլ հանում է թագավորական շքեղ զգեստները, հագնում դերվիշի գզգզված շորեր, մի հին խուրջին գցում ուսին, ճամփորդական ցուպը առնում և առավոտ շուտ վեզիրի հետ դուրս գալիս քյոշկ ու սարայի գաղտնի դռնից։

Ճանապարհին թագավորը որոշում է գնալ հարևան քաղաքը, որտեղ երկար ժամանակ չէր եղել։

Արևը դեռ նոր էր բարձրացել, երբ թագավորն ու վեզիրը մոտեցան քաղաքի պարիսպներին։ Գլխավոր դարբասի մոտ նրանք նկատեցին ալեխառն մազերով, ցնցոտիապատ մի ծերունու, որը գավազանին հենված հաց էր մուրում։ Ծերունու համակրելի դեմքը գրավում է թագավորի ուշադրությունը։ Կամաց մոտենում են։ Թագավորն ասում է.

— Աստված բարին կատարի, ապո։

— Թող աստծու բարությունը միշտ քո վրա լինի, ով փադիշահ, դու իմ աչքի վրա ես եկել,— սթափվելով պատասխանում է ծերունին և, ձեռքը տանելով կրծքին, խոնարհվում է թագավորի առաջ։

Թագավորը մնում է զարմացած, թե այդ ծերունին որտեղի՞ց իմացավ իր ով լինելը։

— Ա՛յ ապո, ի՞նչ գիտես, թե ես փադիշահ եմ,— հարցնում է թագավորը։

— Փադիշահն ապրած կենա, թեև ծերացել եմ, բայց աշխարհի բաները լավ եմ հասկանում,— ասաց ծերունին,— ես գիտեմ, որ դու թագավորն ես, իսկ սա էլ քո վեզիրն է, միասին դուրս եք եկել ման գալու։

— Լավ, դու ինչպե՞ս ես, ապո,— հետաքրքրվում է թագավորը։

— Ինչպե՞ս պետք է լինեմ, փադիշահը մեր գլխից անպակաս, երկուսն արել եմ երեք,— պատասխանում է ծերունին մի փոքր մտածելուց հետո։

— Շատ լավ,— ասում է թագավորը,— հապա ինչո՞ւ քնիցդ շուտ չարթնացար։

— Ո՛վ փադիշահ, քնիցս շուտ արթնացա, բայց ուրիշները տարան,— հոգոց հանելով պատասխանում է ծերունին։

Վեզիրն այս խոսակցությունից ոչինչ չըհասկանալով, ապուշ կտրած, մեկ ծերունուն էր նայում, մեկ՝ թագավորին։

— Ապո՛, եթե քեզ մոտ մի սագ ուղարկեմ, կարո՞ղ ես լավ փետրահան անել,— հարցնում է թագավորը և խորամանկ ժպտում։

— Փադիշահն ապրած կենա, էնպես փետրահան անեմ, ինչպես սիրտդ կուզի,— կորացած մեջքն ուղղելով պատասխանում է ծերունին և ձեռքով հարդարում սպիտակ, փարթամ մորուքը։

Թագավորը այլևս ոչինչ չի ասում և վեզիրի հետ հեռանում է ծերունու մոտից։ Ծերունին գավազանին հենված, ժպիտը դեմքին, երկար ժամանակ հայացքով ուղեկցում է նրանց։

Հաջորդ օրը թագավորն իր մոտ է կանչում վեզիրին և հրամայում.

— Մինչև վաղը առավոտ քեզ ժամանակ

եմ տալիս, այն հարցերը, որ ես երեկ՝ տվեցի ծերունուն և այն պատասխանները, որ նա տվեց ինձ, դու պետք է մտածես և գաս ինձ բացատրես։ Ասացիր՝ լավ, չասացիր՝ գլուխդ կթռցնեմ։

Վեզիրը վախեցած տուն է վերադառնում։ Մինչև երեկո մտածում է, մտածում, բայց չի կարողանում դրանց իմաստը գտնել։ Որոշում է գնալ ծերունու մոտ։

Հագնում է դերվիշի ցնցոտիներ, ձեռքն առնում ցուպը և ճամփա ընկնում։

Ծերունին ժպիտը դեմքին ողջունում է վեզիրին.

— Բարով, հազար բարով ես եկել, իմ սիրելի վեզիր, քեզ ի՞նչն է նորից բերել այս կողմերը։

Ժամանակ չկորցնելու համար վեզիրն անմիջապես հայտնում է իր գալու նպատակը.

— Սիրելի ապո, եկել եմ փադիշահի և քո հարց ու պատասխանի իմաստն իմանամ, եթե չասեմ՝ թագավորը գլուխս կթռցնի։ Փրկիր ինձ, — խնդրում է վեզիրը։

Ծերունին նրա հետ պայման է կապում, ամեն մի պատասխանի համար պահանջելով մի քսակ ոսկի։

Վեզիրի մոտ այդքան ոսկի չի լինում, և նա ծերունուն իր հետ պալատ է բերում, խոստանալով ամեն պատասխանի համար տալ մի քսակ ոսկի։

Ծերունին նստում է գունավոր բարձերից մեկի վրա, որոնք դարսված էին պարսկական թանկարժեք գորգի վրա, բերանն առնում երկար չիբուխը և սկսում բացատրել թագավորի ու իր խոսակցությունը։

— Փադիշահի այն հարցին, թե ես ինչպես եմ, պատասխանեցի, որ երկուսն արել եմ երեք։ Դա նշանակում է՝ այնքան եմ ծերացել, որ գավազան օգտագործելով, երկու ոտքերս դարձրել եմ երեք։

Փադիշահի երկրորդ հարցին, թե ինչո՞ւ քնից շուտ չարթնացա, ես պատասխանեցի, որ շուտ արթնացա, բայց ուրիշը տարավ։ Այդ հարցի իմաստն այն է, թե ինչո՞ւ ժամանակին չեմ ամուսնացել, որ հիմա որդիներս ինձ պահեին։ Ես էլ ասացի, որ ժամանակին եմ ամուսնացել, բայց զավակներս աղջիկներ



էին, ուրիշները տարան։ Իսկ փադիշահի երրորդ հարցը, թե մի սագ կուղարկեմ փետրահան անելու, ես չեմ բացատրի, մինչև վրայից տաք հագուստը չհագցնես ինձ։

Վեզիրը սոխպված կատարում է ծերունու պահանջը։ Ծերունին ոտքի է կանգնում, մաքրում չիբուխը և ծիծաղելով ասում.

— Այդ սագն էլ դու էիր, ով վեզիր։ Փադիշահը քեզ ուղարկեց ինձ մոտ՝ փետրահան անելու համար։ Ամեն մի հարցի համար ես քեզնից վերցրի մի քսակ ոսկի և վրայից տաք հագուստը։ Իսկ այժմ մնաս բարով, — ասում է իմաստուն ծերունին ու քայլերն ուղղում դեպի դուռը։

Մշակեց ՋԱԼԻԼԵ ՋԱՍԸՄ

# ԲՈՒՐՄԱՅԱԿԱՆ ՀԵՔԻԱԹՆԵՐ

# ԵՐԵՔ ՀԻՄԱՐ



Նկ. Ա. ՄԱՇԻՆՅԱՆԻ

Մի անգամ ճագարը — իսկ դուք ախր գիտեք, որ կենդանիների մեջ նա իմաստուն է համարվում — նստած էր ծառի տակ և միտք էր անում կյանքի մասին։

— Աշխարհը լիքն է տագնապներով, վտանգ է սպասվում ամեն մի քայլափոխում, — ասում էր նա ինքնիրեն։ — Նախ՝ տարերային աղետ կարող է լինել, օրինակ, երկրաշարժ, փլուզում կամ փոթորիկ։ Երկրորդ, միշտ պետք է վախենալ սովից, չէ՞ որ ուտելիքի և ջրի պաշարները կարող են վերջանալ։ Եվ, վերջապես, մեկ էլ տեսար, քեզ վրա հարձակվեցին գողերը կամ ավազակները...

Այստեղ ճագարը հիշեց, որ պետք է հանդիպի մեկի հետ և արագ հեռացավ։

Ճագարը չէր էլ կասկածում, որ ջունգլիի երեք բնակիչ լսեցին իրեն ու մահվան չափ վախեցան։ Դրանք էին՝ կիվիվը, անձրևաորդը և կապիկը։

Կիվիվը սարսափեց տարերային աղետներից և արտասվալից խոսեց.

— Իսկ եթե հանկարծ երկինքը փլվի ինձ վրա, երբ ես քնած լինեմ։ Ինչ լավ կլինի, որ ընկնի ցերեկը, ես կարող եմ մի կողմ թռչել։ Բայց եթե երկինքն



ընկնի այն ժամանակ, երբ ես քնած լինեմ, կճզմի ինձ..

Անձրևաորդը վախեցավ սովից.

— Օ՛, եթե ինձ սնող հողի պաշարները վերջանան, այն ժամանակ ես կմեռնե՜մ, կմեռնեմ...

Իսկ կապիկը իսկույն մտածեց գողերի և ավազակների մասին ու արցունքըն աչքերին՝ ասաց.

— Աշխարհում ինձ համար ամենաթանկ բանը հողն է։ Բայց գիշերը ըստիպված եմ թողնել հողը, որովհետև սովորել եմ քնել ծառի վրա։ Ի՞նչ կլինի, եթե քնածս պահին գողերը և ավազակները գան ու գողանան հողը։

Այն ժամանակվանից կիվիվը միշտ քնում է մեջքի վրա, իր փոքրիկ թաթերը այնպես պահած, որպեսզի հենի երկինքին, եթե վերջինս հանկարծ փլվի։ Անձրևաորդը իսկույն դուրս է թքում կերածը, որ չքչանան հողի-պաշարները։ Իսկ կապիկը ամեն գիշեր երեք անգամ իջնում է ծառից, որպեսզի շոշափի հողը և համոզվի, որ գողերը դեռ չեն գողացել այն։

# Ինչու է մերկ գառնանգղը



Շատ տարիներ առաջ գառնանգղը հեզ և, ի միջի այլոց, բավականին կարգին թռչուն էր։ Նրա փետուրները իրենց հատուկ գեղեցկությունը չունեին, բայց ընդհանրապես տանելի էին։

Եվ ահա մի անգամ գառնանգղը նկատեց, որ իր փետուրները թափվում են։ Նա շատ վախկոտ էր և փետուրների մասին դարդ անելուց ուղղակի հիվանդացավ։ Այնպես հուզվեց, որ նույնիսկ նիհարեց։ Վերջապես թռչունները խղճացին գառնանգղին ու որոշեցին նրան մեկական փետուր տալ։ Երբ բոլոր թռչունները գառնանգղին մեկական փետուր տվին, նրա փետուրները

փայլեցին ծիածանի բոլոր գույներով։ Նա տարօրինակ, զարմանալի տեսք ըստացավ։

Եվ ահա դրանից գառնանգը շատ գոռոզացավ։ Հպարտությունից փքված, քայլում էր ուրիշի փետուրներով զարդարված և հայտարարում, որ ամենագեղեցիկ թռչունը ինքն է։ Գառնանգի գոռոզությունն այնտեղ հասավ, որ նա առաջարկեց թռչուններին իրեն թագավոր ճանաչել։

Լսելով այդպիսի լկտի հայտարարություն, թռչունները նորից հետ խլեցին գառնանգի բոլոր փետուրները, ոչ միայն այն, որ տվել էին նրան, այլև նրա սեփականը։ Այդ ժամանակվանից գառնանգը մնաց առաջվանը՝ այլանդակ և մերկ։

## ԱՐՋՆ ՈՒ ԳԻՐՔԸ

ՀՈԲՈՍ ԱԴԵՐ

Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

Թավ անտառում մի բրդոտ
Տրորելով ծիլ ու խոտ,
Որոնում է պտուղ, միրգ,
Բայց գտնում է շքեղ գիրք։
Գիրքն առնում է, հոտոտում,
Շուռ է տալիս, փնթփնթում.
— Տեսնեմ ի՞նչ է, որ այդքան
Մարդիկ գովում են դրան։ —
Ծամում, ծամում, ծամծմում,
Բայց ոչ մի համ չի առնում։
— Տեսեք, անհա՜մ է ինչքան,
Արժե՞ գովել բա սրան.
Եթե լիներ մի լավ տանձ,
Ես կասեի՝ գանձ է, գա՜նձ։
Իսկ այս գրքից ի՞նչ օգուտ, —
Փնթփնթում է արջը բութ։



# Լիպոն

ՆՈՐԱՅՐ ԱԴԱԼՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Ամեն տարի գարնանը աշակերտները դպրոցի այգում ծաղիկների սերմեր էին ցանում, և շուտով գետինը ծածկվում էր գույնզգույն ծաղիկների գորգով։

Այդ տարին նրանք նորից փխրեցրին հողը, վերանորոգեցին ձմռանը փլացած ցանկապատը և ծաղիկների սերմերը գցեցին սև հողի մեջ։ Միայն Լիպոն չմասնակցեց այդ աշխատանքներին։ Նա ամբողջ օրը խաղում էր փողոցում և մտքում ծիծաղում իր ընկերների վրա։

— Լիպո՛, արի օգնիր մեզ,— ասում էին աշակերտները։

Բայց Լիպոն չէր գնում։ «Այդ ի՞նչ օգնություն կլինի,— մտածում էր նա,— ա՛յ, եթե Սաքոն նորից ծեծի Լևոնիկին, ես նրա քիթը կջարդեմ»։



Անցավ մի քանի շաբաթ։ Գետինը կանաչեց, և ծաղիկները կամաց-կամաց բացեցին իրենց աչիկները։ Ինչպիսի՜ ծաղիկներ կային. և՛ մեխակ, և՛ նարգիզ, և՛ շուշան։ Երեխաները շատ ուրախ էին, որ իրենց աշխատանքը այդ տարի էլ իզուր չանցավ։ Դասերից հետո, ազատ ժամերին նրանք հավաքվում էին այգում և լավ ժամանակ անցկացնում։

Լիպոն և Անոն ապրում էին միևնույն բակում։

— Լիպո՛, ինձ համար ծաղիկներ բեր,— մի օր ասաց Անոն։

— Որտեղի՞ց։

— Ձեր դպրոցի այգում ծաղիկներ կան, պոկիր ու բեր։

— Չի կարելի, չեն թողնում։ Դո՛ւ ձեր դպրոցից ծաղիկներ բեր։

— Մեր դպրոցում ծաղիկներ չկան։ Ինձ համար քաղիր, Լիպ, էլ ի՞նչ տղա ես։

— Լավ,— ասաց Լիպոն մի քիչ մտածելուց հետո,— սպասիր, ես շուտով կվերադառնամ։

Մի քանի րոպե հետո Լիպոն հասավ իրենց դպրոցի այգուն, զգուշությամբ չորս կողմը նայեց և, մարդ չտեսնելով, ցատկեց ցանկապատից ներս։ Նա կապույտ ու կարմիր ծաղիկներից արագությամբ մի մեծ փունջ կազմեց և ճարպկությամբ ծլկեց։

— Ա՛ռ,— հևասպառ բակը մտնելով ասաց նա Անոյին։

— Ապրես, Լիպո, դու իսկական տղա ես։

Այդ խոսքի վրա Լիպոյի աչքերը փայլեցին։ Նա հպարտ զգաց, որ վերջապես իրեն կարգին գնահատում էին։

Մյուս օրը աշակերտները հավաքվեցին դպրոցի այգում։ Նրանք շատ հուզված էին։

— Ո՞ւր են իմ կարմիր ծաղիկները,— լաց լինելով ասաց առաջին դասարանցի մի աղջիկ։

— Լիպո՛, դու չգիտե՞ս, թե ով է տրորել մեր ծաղիկները,— հարցրեցին աշակերտները։

— Չէ,— ասաց Լիպոն։ Բայց նույն վայրկյանին զգաց, թե ինչպես սիրտը անհանգիստ զարկեց։

Աշակերտները մեծ զգուշությամբ ուղղեցին տրորված ծաղիկները և վշտացան, որ մի չար մարդ է մտել իրենց այգին։

Իսկ երկու օր հետո Անոն նորից.

— Լիպո՛, ինձ ծաղիկներ բեր։ Ես գնալու եմ մորաքրոջս մոտ, ուզում եմ նրան ծաղիկներ տանել։

— Անո՛, դու խե՞նթ ես, որտեղի՞ց ծաղիկ բերեմ:

— Ձեր դպրոցում շատ ծաղիկներ կան:

— Դրանք իմ ծաղիկները չեն: Ես չեմ կարող պոկել: Եթե իմանան, գիտե՞ս ինչ կանեն:

— Վախկոտ... Լիպո՛, խնդրում եմ:

Լիպոն մի քիչ մտածեց:

— Լավ: սպասիր, թող մթնի:

Երբ մթնեց, նա զգուշությամբ փողոց դուրս եկավ, կամաց մոտեցավ դպրոցին, շրջանցեց այգու ցանկապատը, ոչ ոք չկար: Նա արագ ցատկեց ցանկապատից ներս և մթության մեջ խարխափելով սկսեց որոնել ծաղիկները:

Հինգ րոպե հետո նա տուն էր վերադառնում ծաղիկների մի մեծ փունջ ձեռքին:

Անոն այս անգամ էլ գովեց նրան:

— Լիպո, դու քաջ ես:

Մյուս օրը աշակերտները շատ հուզված էին:

— Ո՞վ է փչացնում մեր ծաղիկները:

— Պետք է հայտնել դպրոցի դիրեկտորին:

Լիպոն շատ վախեցավ: Կարծես մեկը ասում էր նրան. «Ինչու՞ ես փչացնում ծաղիկները, դրանք բոլորինն են»:

Նա որոշեց, որ այլևս ծաղիկներ չպոկի, սակայն չկարողացավ պահել իր խոսքը, որովհետև ծաղիկները ինքը չէր ցանել, և Անոն ամեն օր նրանից ծաղիկներ էր խնդրում:

Աշակերտները տեսնում էին ինչպես իրենց ծաղիկները կամաց-կամաց չքանում են: Նրանք չգիտեին ինչ անել:

— Լիպո՛, օգնիր մեզ փրկել ծաղիկները,—մի օր էլ նրանք ասացին Լիպոյին,—դու կարող ես:

Լիպոն ոչինչ չպատասխանեց և տխրեց:

— Ի՞նչ պատահեց, Լիպո:

Լիպոն կախեց գլուխը:

Աշակերտները նորից ուղղեցին կոտրած ծաղիկները և մաքրեցին հողը քարերից ու փշերից:

Շատ քիչ ծաղիկներ էին մնացել:

Երեկոյան Անոն Լիպոյին ասաց.

— Լիպո՛, վաղը մայրիկիս հետ գնալու եմ զբոսանքի, ինձ համար ծաղիկներ բեր:

— Չեմ կարող,—չոր պատասխանեց Լիպոն:

Բայց Անոն շատ խնդրեց և, վերջապես, կարողացավ համոզել Լիպոյին, որ գնա ծաղիկների ետևից:

Արդեն մթնել էր: Ինչքան Լիպոն մոտենում էր դպրոցի բակին, այնքան դանդաղեցնում էր քայլերը: Դարբասի մոտ նա կանգ առավ և չէր համարձակվում ներս մտնել: Քեռի Պետրոսի Բողարը չըգիտես որտեղից հայտնվեց փողոցում, հոտոտեց Լիպոյի ոտքերը և գնաց: Վերջապես տղան մտավ բակը, վախենալով մոտեցավ այգու ցանկապատին, բայց անմիջապես ընկրկեց: Մի քանի րոպե նա չգիտեր ինչ աներ: Հանկարծ շուն եկավ և արագ վազեց դեպի տուն: Նրան թվում էր, որ մեկը իրեն հետապնդում է, բայց չէր համարձակվում ետ նայել: Հանկարծ ոտքը առավ քարին, նա երեսնիվար ընկավ: Այդ ժամանակ Լիպոն զգաց, որ մեկը բռնեց իր շալվարից, և մի սուր ցավ ցնցեց նրան: Նա սարսափած ետ նայեց ու տեսավ քեռի Պետրոսի շանը:

— Բողա՛ր, թո՛ղ,—լաց լինելով ասաց Լիպոն:

Շունը ճանաչեց տղային և ամաչելով ետ քաշվեց, իսկ Լիպոն դժվարությամբ ոտքի կանգնեց ու կաղալով գնաց տուն:

— Անո,—բակում հանդիպելով աղջկան ասաց նա,—ես չբերեցի ծաղիկները: Ես վախկոտ չեմ: Այո, մյուս տարի ես էլ աշակերտների հետ ծաղիկներ կցանեմ, քեզ էլ կկանչենք: Ուզո՞ւմ ես: Իսկ ծաղիկները չի կարելի պոկել...

Անոն միայն ասաց.

— Լավ, Լիպո:

Մյուս օրը աշակերտներն ուրախության մեջ էին... Ծաղիկները ոչ ոք չէր պոկել: Երեկոյան բոլորը գնդակ էին խաղում: Լիպոն շատ էր ուզում խաղալ ընկերների հետ, բայց չկարողացավ, դեռ նրա ոտքը ցավում էր:



# Հիշենք



## Հանիր գլխարկդ

Քաղաքավարության կանոնները որևէ մեկի կողմից չեն հնարվել: Դրանք առաջացել են ժողովրդի մեջ աստիճանաբար:

Դու երևի շատ անգամ ես լսել. «Ինչո՞ւ գլխարկդ չես հանում, երբ սենյակ ես մտել»:

«Իսկ ինչո՞ւ հանել,— մտածել ես դու:— Որտեղի՞ց է այս կանոնը վերցվել»:

Ահա թե որտեղից:

Հարյուրավոր տարիներ առաջ մարդու կյանքն ավելի շատ վտանգների էր ենթարկված, քան այժմ: Մեկ էլ տեսար հետևից նիզակով կամ թրով հարվածեցին: Մարդիկ շրջում էին միշտ զինված: Իսկ հեռավոր ճանապարհորդության մեկնելիս՝ հագնում էին ծանր զրահներ. գլուխը թաքցնում երկաթե սաղավարտի տակ:

Բայց ահա ճանապարհին մի տնակ կա, ուր բարի մարդ է ապրում: Ներս մտնելով, ասպետը հանում է սաղավարտը և բռնում ձեռքին:

«Քեզնից վտանգ չկա,— կարծես ասում է տանտիրոջը,— ես քեզ վստահում եմ: Դու լավ մարդ ես, ոչ թալանող ես, ոչ էլ դավաճան»:

Այդ վտանգավոր ժամանակները վաղուց անցել են:

Բայց ներս մտնելիս գլխարկը հանելու սովորությունը մնացել է: Մնացել է, որովհետև դա լավ սովորություն է: Գլխարկդ հանելով, կարծես քո հարգանքն ես արտահայտում այդ տան, նրա բնակիչների նկատմամբ, հավատում ես նրանց լավ վերաբերմունքին:

Եվ դա, իհարկե, հաճելի է տանտերերին:



## Որն է ավելի հարմար

Կանգառին մոտեցավ տրամվայը: Սպասողների բազմությունը նետվեց դեպի վագոնները: Մի խումբ դպրոցականներ, որոնք դահուկներով վերադառնում էին զբոսանքից, հրմշտելով առաջ անցան ու խանգարելով իրար՝ գրոհեցին տրամվայի նեղ դռների վրա:

Բայց շատ քչերին էր հաջողվում վագոն մտնել: Կոնդուկտորը չէր կարողանում մեկնման ազդանշան տալ վարորդին: Տրամվայն ուշանում էր:

### ԲԱՐԵՎ ՁԵԶ.

1. Երբ քեզ մոտ հյուր է եկել, օգնիր նրան վերարկուն հանելու, ուղեկցիր սենյակ և աթոռ առաջարկիր:

2. Երբ հյուրը գնում է, օգնիր նրան վերարկուն հագնելու և բաց արա դուռը:

3. Ծանոթի հանդիպելիս կամ սենյակ մտնելիս բարևիր առաջինը: Բայց սպասիր, որ քեզնից մեծը նախ ինքը ձեռք տա:

4. Բարևելիս հանիր գլխարկդ և չծածկես, մինչև չսեղմես դիմացինիդ ձեռքը:

5. Ձեռքով բարևելիս հանիր ձեռնոցդ:

6. Խոնարհվելիս թեքիր միայն գլուխդ և ոչ թե՝ ամբողջ մարմինդ:

7. Երբ կողքովդ անցնում է քեզնից մեծը կամ աղջիկ, մի կողմ քաշվիր ու ճանապարհ տուր:

8. Տրամվայ կամ ավտոբուս նստելիս առաջ թող ուղեկցիդ: Երբ ծեր մարդ, երեխայով ուղևոր կամ կին մոտենա, ճանապարհ տուր:

9. Դռնով առաջինը մի անցնի, այլ դուռը բաց արա և ուղեկիցներիդ առաջ թող:

10. Մտնելով սենյակ, ուր շատ մարդ կա, մի՛ աշխատիր բոլորին առանձին-առանձին բարևել: Բավական է սեղմել տանտիրոջ կամ տանտիրուհու ձեռքը, իսկ մյուսներին գլուխ տալ ու ասել՝ «Բարև ձեզ»:

11. Երբ մեծերը կանգնած են, դու մի՛ նստիր: Երբ սենյակ է մտնում քեզնից մեծը, կամ աղջիկ, ոտքի կանգնիր, աթոռ առաջարկիր նրան, իսկ քեզ համար նոր աթոռ բեր:

# Քաղաքավարի

## ՆՍՏԵՑԵՔ, ԽՆԴՐԵՄ

**12.** Աթոռի վրա մի՛ փռվիր: Ոտքդ ոտքիդ վրա մի՛ գցիր: Ձեռքերը գրպանում պահելը տգեղ է:

**13.** Մի՛ աշխատիր զրուցակցից ավելի բարձր խոսել: Ով առանց ձայնը բարձրացնելու է խոսում, նրան ավելի ուշադիր են լսում:

**14.** Անընդհատ ձևով մի՛ ծիծաղիր, երբ ծիծաղդ չի գալիս: Շատ բարձր մի՛ քրքջա:

**15.** Հասարակական վայրերում խոսիր այնպես, որ միայն զրուցակիցդ լսելի լինի:

**16.** Երբ բոլորի մոտ ուզում ես ընկերոջդ գաղտնի բան ասել, նրա ականջին մի՛ փսփսա, այլ սպասիր, մինչև նրա հետ մենակ կմնաս:

**17.** Ներկա եղողի մասին մի՛ ասա «նա», այլ անունը տուր:

**18.** Որքան ուշադիր լսես զրուցակցիդ, այնքան հաճելի է նրա համար: Նրա խոսքը մի՛ կտրիր, քանի դեռ նա չի վերջացրել:

**19.** Նախքան առարկելը, մինչև վերջ լսիր, թե ինչ են ասում:

**20.** Երբ խոսակցության ժամանակ քեզ կընդհատեն, լռիր ու լսիր առարկությունը և ոչ թե սկսի գոռալ:

**21.** Մեծերի խոսակցությանը մի՛ խառնվիր:

**22.** Խոսելիս մի՛ բռնիր գիմացինիդ ձեռքից, կամ ուսին մի՛ խփիր, մի՛ խաղա նրա վերարկուի կոճակի հետ:

**23.** Թատրոնում կամ կինոյում կարգերի արանքով անցնելիս դեմքդ արա դեպի նստածները: Երբ քո մոտով են անցնում, վեր կաց և ճանապարհ տուր:

Իսկ մյուս վագոնի մոտ հանգիստ էր: Պիոներական մի ջոկատ շարքով մոտեցավ վագոնին ու, մի րոպե չանցած, առանց աղմուկի ու հրմշտոցի, պիոներները մեկը մյուսի ետևից ներս մտան:



Պարզվում է, որ հրմշտոցը ոչ միայն կոպիտ ու տգեղ է, այլև վնասակար: Մինչ դահուկավորները հրմշտում էին իրար, կոնդուկտորը ստիպված եղավ մեկնման ազդանշան տալ, տրամվայը շարժվեց, և նրանցից շատերը մնացին կանգառում: Դահուկավորներն, առանձնապես, ոչ մի տեղ էլ չէին շտապում և դեպի դոներն էին նետվել, պարզապես, կռվարարությունից ու լոպազությունից մղված:

Դրա հետևանքն այն է լինում, որ տրամվայը կամ ավտոբուսը մեկնում են, իսկ շատերը մնում են կանգառում և գետնից հավաքում են անմիտ պայքարի ժամանակ պոկված կոճակներ:

Ձեռնտու չէ նաև խոսակցության ժամանակ իրար ընդհատելը:

Տեսնում ես՝ երեք աղջիկ իրար խոսք կտրելով, վիճում են, յուրաքանչյուրն իրենն է ասում ու մյուսին չի լսում, այլ աշխատում է ավելի բարձր խոսել:

Եվ ի՞նչ. նրանք կարող են այդպես մի ամբողջ ժամ կորցնել, բղավել, խռպոտել և ոչինչ չհասկանալ իրարից:

## Շատ հարմար է և հաճելի

Ինչու՞ մենք պատմեցինք այս բոլորը:

Նրա համար, որպեսզի ցույց տանք, թե որն է քաղաքավարության կանոնների իմաստը, որոնցից շատ երեխաներ խուսյս են տալիս:

Այնինչ այստեղ մեծ ու կարևոր իմաստ կա: Դա շրջապատի մարդկանց հարգելն է: Չէ՞ որ նրանցից յուրաքանչյուրը քո կյանքի ու աշխատանքի ընկերն է: Հարգելով նրանց, պետք է քեզ այնպես պահես, որ մարդիկ քո կողքին կարողանան ապրել հաճույքով ու չնեղվեն:

Այս համարից մեր ամսագիրը սկսում է տպագրել քաղաքավարության կանոնները:

Աշխատիր ըմբռնել յուրաքանչյուր կանոնի իմաստը և դու կհասկանաս, թե ինչու է հարկավոր վարվել այնպես, ինչպես կանոններն են պահանջում:

# ԹԱՓԱՌԱՇՐՋԻԿ ՄՐՋՅՈՒՆՆԵՐ




«...Անտառեզրը թաքնվեց արևադարձային կարճատև իրիկնամուտի կիսախավարում: Աղմուկն ու եռուզեռը աստիճանաբար հանդարտվեցին ճամբարում: Երկար, թանձր ստվերները պառկեցին գետնին:

Ես սկսել էի արդեն ընկղմվել խորը քնի մեջ, երբ հանկարծ ինձ ուղեկցող հնդիկը վեր թռավ ոտքի և սկսեց ականջ դնել:

Անտառի թավուտից լսվեցին թռչունների տագնապալից կանչեր: Ինչ-որ մանր գազանիկներ հողմի պես սլացան մեր կողքով և ծածկվեցին խիտ խոտի մեջ:

— Պետք է գնալ: Գալիս են մրջյունները, — տագնապով ասաց ուղեկցողը:

Ես զարմացած հարցրի, թե ինչպիսի վտանգ կարող է սպառնալ մրջյուններից, բայց նա ոչինչ չպատասխանեց և սկսեց արագ թամբել ձիերը:

Մի քանի րոպեից հետո մենք ճանապարհ ընկանք:

Ես մի անգամ խնդրեցի հնդիկին, որ պատմի, թե ինչը ստիպեց մեզ այդպես արագ թողնել ճամբարը:

Նա ասաց, որ մոտենում է թափառող մրջյունների մի ամբողջ բանակ, և եթե մենք չհեռանանք նրանց ճանապարհից, մեզ լուրջ վտանգ կսպառնա:

Ես, այնուամենայնիվ, որոշեցի ճամբար վերադառնալ, որպեսզի գոնե հեռվից տեսնեմ այդ զարմանալի միջատներին:

Բարձրանալով անտառի եզրին միայնակ կանգնած հսկայական ծառի գագաթը, ես սկսեցի ուշադրությամբ դիտել չորս կողմը:

Սկզբում ոչինչ չտեսա, բայց շուտով նկատեցի մութ, օձանման գանգված, որը շարժվում էր անտառեզրի երկայնքով:

Դա թափառող մրջյունների շարասյունն էր: Նրա երկարությունը երեք հարյուր մետրից ավելի էր: Ես լավ տեսնում էի միջատների աղոտ կերպով փայլփլող մեջքերը: Միջատները շարժվում էին առանց շտապելու՝ պահպանելով խիստ կարգ: Շուտով շարասյունը շրջվեց դեպի անտառը և ծածկվեց թավուտում...»:

Թափառաշրջիկ մրջյունները, որոնց մասին պատմում է ճանապարհորդը, ապրում են Մեքսիկայի արևադարձային անտառներում և Կենտրոնական Ամերիկայում: Սովորական անտառային մրջյունների նման սրանք բներ չեն կառուցում, այլ մշտապես քոչում են տեղից տեղ: Շարասյան առջևից և կողքերից գնում են խոշոր մարտիկ մրջյունները: Նրանք ստեղծում են յուրատիպ «մարտական պահպանություն»: Շարասյան մեջտեղում շարժվում են մայրն ու բեռնակիր մրջյունները՝ բարձված մրջնային հարսնյակներով:

Բոլոր կենդանիները ջունգլիներում փախչում են այդպիսի բանակից: Մինչև անգամ հսկա փիղը շտապում է կորչել մի որևէ ավելի հեռու տեղ: Վա՜յ ճանապարհորդին, եթե թափառաշրջիկ մրջյունները նրան քնած հանդիպեն: Մի քանի ժամից հետո նրանից կմնա կրծոտված կմախքը: Գիշատիչ մրջյունները հարձակվում են օձերի, մանր գազանիկների և միջատների վրա: Դա նրանց հիմնական սնունդն է:

Թափառաշրջիկ մրջյունների համար գոյություն չունի ոչ մի արգելք, մինչև անգամ գետերը չեն կանգնեցնում նրանց ընթացքը: Գետի հանդիպելիս, այդ մրջյունները հավաքվում են կույտով և կազմում խիտ գունդ: Այդպիսի գնդի արտաքին շերտերը բաղկացած են միմյանց շատ սերտ կցված մարտիկ մրջյուններից: Կենտրոնում թաքնվում են մայրը և հարսնյակներով բեռնված մրջյունները: Գունդը գլորվում է ջրի մեջ և լողալով անցնում մյուս ափը: Առվակ անցնելիս մարտիկ մրջյուններն իրենց մարմիններով կառուցում են կամուրջներ, որոնց վրայով անցնում է ամբողջ բանակը:

Բայց այդ մրջյուններն էլ ունեն իրենց թշնամին: Դրանք բենգալական խոշոր ճանճերն են: Նրանք ամբողջ երամով հարձակվում են շարասյան վրա, ջանալով խլել նրանց թանկարժեք հարսնյակները: Ճիշտ է, մարտիկ մրջյունները ջանում են հետ մղել այդ «օդային գրոհները», բայց դա միշտ չի հաջողվում:

Թափառաշրջիկ մրջյունները ճանապարհորդում են մայրամուտին և գիշերը: Սովորաբար շարասյունը տեղաշարժվում է տասնհինգ—տասնյոթ գիշեր, որից հետո ամբողջ բանակը կանգ է առնում հանգստի: Այդ ժամանակ մայրը ձվեր է դնում, որոնցից հետագայում զարգանում են թրթուրներ: Մարտիկ և բանվոր մրջյունների հրոսակները շրջում են ամենուրեք՝ սնունդ հայթայթելով մոր և թրթուրների համար:

Կանգառը տևում է մոտ քսան օր: Այդ ժամանակամիջոցում թրթուրները հասցնում են վերածվել հարսնյակների, և շարասյունը ճանապարհ է ընկնում:

Այդ մրջյունների կյանքի ուսումնասիրությունը վտանգավոր զբաղմունք է: Մի գերմանացի գիտնական քիչ էր մնացել զոհվեր, հանդիպելով այդպիսի «թափառաշրջիկ մրջյունների»:

Վերջերս ամերիկական արշավախմբին, այնուամենայնիվ, հաջողվեց Պանամայից ԱՄՆ բերել թափառող մրջյունների մի շարասյուն, որի միջատների թիվը հասնում է մոտ երկու հարյուր հազարի: Այդ շարասյունը գտնվում է Նյու-Յորքի բնագիտական պատմության թանգարանում:

# Շնորհալի շախմատիստը

Երբ Էդվարդը սովորեց շախմատ խաղալ, ընդամենը տասնմեկ տարեկան էր: Հենց սկզբից նա տարվեց շախմատով: Դպրոցում շուտով աչքի ընկավ, մասնակցեց դպրոցական մրցումներին, նվաճեց առաջին տեղը:

Էդվարդի վրա մեծ ազդեցություն գործեց շախմատի գծով միջազգային վարպետ Հ. Գասպարյանը, որի ղեկավարած խմբակի պարապմունքներին կանոնավոր կերպով մասնակցում էր պատանի շախմատիստը:

Համառ աշխատանքը տվեց իր պտուղները: 1955 թվականին տասնվեցամյա Էդվարդ Մնացականյանը դարձավ ռեսպուբլիկայի շախմատի չեմպիոն պատանիների մեջ: Հաջորդ տարին նա պահպանեց չեմպիոնի կոչումը: 1957 թվականին Էդվարդն արդեն խաղում էր մեծերի հետ: Մի քանի փայլուն հաղթանակներ տանելով՝ նա նվաճեց քաղաքի չեմպիոնի կոչումը:

Պատանի շախմատիստը լավագույն արդյունքի հասավ Թբիլիսիի Անդրկովկասյան գոտու մրցումներում: Այդ տուրնիրում, որին մասնակցում էին Անդրկովկասի և Մոլդավիայի 20 ուժեղագույն շախմատիստներ, ինչպես նաև գրոսմայստեր Մ. Տայմանովն ու վարպետ Լ. Արոնինը, Մնացականյանը գրավեց երրորդ տեղը: Նա ստացավ վարպետության թեկնածուի կոչում և իրավունք նվաճեց մասնակցելու ՍՍՌՄ XXV առաջնության կիսաեզրափակիչ խաղերին: Էդվարդը մասնակցեց նաև ՍՍՌՄ ուժեղագույն պատանի շախմատիստների Լենինգրադի մարզական հավաքին, որի ընթացքում կազմակերպված ընտրական տուրնիրում (պատանիները խաղում էին հինգ լավագույն վարպետների հետ) նա գրավեց երկրորդ տեղը:

Է. Մնացականյանն արագ աճող, խոստումնալի շախմատիստ է: Նրա խաղի ոճը հարձակողական է: Նա սիրում է անակնկալի բերել հակառակորդին և խաղի բախտը վճռել անսպասելի կոմբինացիաներով:

Ահա Թբիլիսիում խաղացած նրա պարտիաներից մեկի վերջավորությունը: Էդվարդի դեմ սևերով խաղում էր Անդրկովկասի ուժեղագույն շախմատիստներից մեկը՝ Աբակարովը (Բաքու): Բազմաթիվ գլխապտույտ բարդություններից հետո տախտակի վրա ստացվեց հետևյալ դրությունը.




Այստեղ Մնացականյանը խաղի ելքը վճռում է շատ հետաքրքիր ձևով: 40-րդ քայլ Ձիb5—c7+! (սրամիտ զոհաբերություն, որի վախճանն այնքան էլ հեշտ չէր գտնել), Ձի a8:c7: 41. b4—b5 (պարզվում է, որ սպիտակ զինվորների շարժումը անհնար է կանգնեցնել: Մնացականյանը լավ է հաշվել նաև սևերի h զինվորի շարժումը), h4—h3: 42. g2:h3, g4:h3: 43. b5—b6! h3—h2 (այլ ելք չկա): 44. b6:c7, h2—h1Թ (առաջինը սևերն են ստանում նորընծա թագուհի, բայց դրա փոխարեն սպիտակները երկուսն են ստանում): 45. c7—c8Թ+, Ա e6—f6: 46. a7—a8Թ (ահա նաև երկրորդ թագուհին): Աբակարովին թվաց, թե նա կարող է մշտնջենական շախ տալով փրկվել, բայց 46.... Թ h2+ քայլից հետո, երբ Մնացականյանը խաղաց՝ 47. Ա e2—d3, բազմաթիվ հանդիսականների ծափերի տակ Աբակարովը պատանի շախմատիստին շնորհավորեց արժանի հաղթանակի համար:

Ա. ՍԱՐԳՍՅԱՆ

*Շախմատի գծով վարպետության թեկնածու*



# Լուծեք այս խնդիրները



1. Սկսում են սպիտակները և մատ անում երկու քայլից:



2. Սկսում են սպիտակները և մատ անում երկու քայլից:
Առաջարկ՝ Ռ. ՕԼԹԵՑՅԱՆԻ



3. Սկսում են սպիտակները և մատ անում երեք քայլից:
Առաջարկ՝ Ժ. ԲՅՈՒԶԱՆԴՅԱՆԻ և Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Մի ծառ գիտեմ ես դարավոր,
Տերևը խիտ, արմատը խոր,
Ինքը թեև մեծ է փղից,
Բայց պտուղը փոքր է ձվից:

---

Ոչ ուտում է, ոչ էլ խմում,
Բայց տիրոջը կուշտ է պահում:

---

Երբ քեզ մոտ է դեռ, քո գերին
է նա,
Կլինես իր գերին, երբ քեզնից
գնա:

Մ. ԿՈՐՅՈՒՆ

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

**„ՊԻՈՆԵՐ", № 12, 1957 թ.**

ԿՐՈՍՎՈՐԴ-ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ— *Ուղղահայաց*. 1. Վառարան, 2. կակաչ, 3. սագ, 4. քարտեզ, 6. քամի, 8. կարկուտ, 10. կոմբայն, 12. աստղ, 13. աղվես, 16. զանգ, 18. նուռ:

*Հորիզոնական*.—5. Թանաքաման, 7. աքաղաղ, 8. սեղան, 11. նավ, 14. եղջերու, 15. մկրատ, 17. սունկ, 19. ջայլամ, 20. դուռ, 21. գորտ:

ՌեԲՈՒՍ—«Մի կյանքի պատմություն»:

Ի՞ՆՉ Է ԳՐՎԱԾ ԱՅՍՏԵՂ—12 = 2·6—լ, 15=3·5—ե, 30=5·6—ր, 56=7·8—մ, 4=2·2—ո, 64=8·8—ն, 20=4·5—տ, 9=3·3—ո, 49=7·7—վ, 56=7·8—մ, 24=4·6—ծ, 28=4·7—ի, 42=6·7—ր, 40=5·8—ի: Ստացվում է՝ Լերմոնտով, «Մծիրի»:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի 1-ին էջը՝
Պստիկ Խոստիկը և
Երկար Մակարը
փողոցում:
Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Համարի գեղարվեստական
ձևավորումը՝
Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 01043. Պատվեր 1434. Տիրաժ 6200: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 8/I 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91: Գինը 2 ռ.




## ԱԼԵՔՍԵՅ ՏՈԼՍՏՈՅ

Փոքրիկ Ալյոշային արթնացնում էին ճնճղուկները։ Գլուխը դուրս հանելով վերմակի տակից, նա լսում էր, թե ինչպես լոռիների միջից քաղցրաձայն շվշըվացնում էր պիրոլը։ Բաց լուսամուտից սենյակ էր լցվում ծաղիկների ու խոտերի թարմ բուրմունքը։ Կապու՜յտ-կապու՜յտ երկնքի վրայով լողում էին սպիտակ ամպերը, որ կարծես ձյան կույտեր լինեին։

Ալյոշան հաճախ ամբողջ օրը անցկացնում էր լճափին՝ ձիապան Միշկայի հետ, որը նրան ձի նստել էր սովորեցնում։ Հետո գլխիվայր թռչում էր ջրի մեջ ու լող տալիս մինչև հոգնելը։ Նա սիրում էր քայլել դեզերի երկայնքով, նայել գութանավորներին ու կալի մոտ կանգնած նրանց անիվավոր տախտակե տնակներին։ Նա գյուղի երեխաների հետ զանազան խաղեր էր խաղում, կլոպիկ ձիով գնում էր փոստային բաժանմունքը և բերում իրենց հասցեով եկած նամակները, թերթերն ու ժուռնալները։ Ալյոշային կարելի էր տեսնել նաև տոնավաճառի զնգացող և հնձի տեղից վերադարձող սայլերի վրա։ Նա տարված նայում էր վերջալույսի նեղ շերտերին, որոնք գունատ և աշնան վերջալույսի նման ծիածանագույն վառվում էին տափաստանի վրա ու հին հողաթմբերին։ Երբ երկինքը զարդարվում էր առկայծող անհամար նրազներով, Ալյոշան ցորենի ծղոտի վրա պառկած անթարթ աչքերով նայում էր աստղերին, լուսավոր մշուշով պատած Հարդագողի ճանապարհին։ «Այս բոլորը իմն են,— մտածում էր երազկոտ պատանին,— մի օր նավ կնստեմ ու կթռչեմ...»։ Իսկ ձմռանը տնային դասերից ու բացօթյա խաղերից հետո Ալյոշան հաճախ մտնում էր հոր առանձնասենյակը, թաղվում կաշվե բազմոցի մեջ ու տարվում ընթերցանությամբ։ Կարդում էր Ֆենիմոր Կուպերի կախարդական գիրքը ու հետո



երկար ժամանակ հոնքերը կիտած պատկերացնում էր կանաչ խոտի ալիքներից աղմկող, լայնարձակ մարգագետիններ, խրխինջով սուրացող ձիեր, մութ-մութ ձորեր, ապա ալեհեր ջրվեժը, իսկ նրա տակ՝ գուրոնների առաջնորդ հնդիկին, զարդարված փետուրներով ու երկար հրացանով։

Հետո նրա աչքի առջև պատկերվում էր անտառը։ Հսկա ծառերի մեջ, քարի վրա ահա նստած է ինքը՝ բռունցքները թշերին։ Ոտքերի մոտ խարույկն է ծխում։

Երազում էր Ալյոշան... Ու մի օր էլ նա ոտանավոր գրեց անտառի մասին։

Այսպես է անցել ռուս ականավոր գրող Ալեքսեյ Տոլստոյի մանկությունը Սամարայից ոչ հեռու գտնվող իր հոր կալվածքում։

1907 թվականին, երբ Տոլստոյը 24 տարեկան էր, լույս տեսավ նրա ոտանավորների առաջին գրքույկը, իսկ մեկ տարի հետո՝ երկրորդը։ Սակայն Ալեքսեյ Տոլստոյին գրական հռչակ բերեցին նրա արձակ գործերը։ «Պետրոս Առաջին», «Տառապանքի ուղիներով», և մյուս գործերը թարգմանված են բազմաթիվ լեզուներով և դարձել են մեր ընթերցողների սեղանի գիրքը։

Բայց Տոլստոյը չի գրել միայն մեծերի համար։ Ո՞ր պատանին չի կարդացել նրա «Ոսկե բանալին կամ Բուրատինոյի արկածները»։ Մանուկ և պատանի ընթերցողները մեծ հետաքրքրությամբ են կարդում նաև «Նիկիտայի մանկությունը» ինքնակենսագրական վիպակը, «Աելիտա», «Ինժեներ Գարինի հիպերբոլոիդը» և այլ ստեղծագործություններ։

Գրող լինելուց բացի, Ա. Տոլստոյը եղել է ակտիվ հասարակական գործիչ։ Երկար տարիներ նա Գերագույն Սովետի դեպուտատ էր, իսկ Հայրենական պատերազմի տարիներին աշխատում էր Պետական Արտակարգ Հանձնաժողովում, որը հետաքննում էր գերմանական ֆաշիստների գազանային գործողությունները։ Այդ տարիներին նա բազմաթիվ պատմվածքներ է գրել սովետական ռազմիկների կյանքից, հանդես է եկել հրապարակախոսական հոդվածներով։ 1943 թվականին, երբ «Տառապանքի ուղիներով» վեպը արժանացավ առաջին կարգի մրցանակի, Տոլստոյը ստացած գումարը նվիրեց պետությանը՝ բանակի համար տանկ կառուցելու։

Ալեքսեյ Նիկոլաևիչ Տոլստոյը մեռավ 1945 թվականին, 62 տարեկան հասակում։

Հունվարի 10-ին լրացավ նրա ծննդյան 75 տարին։

# ՄԱՆՈՒԿՆԵՐԸ ՆԿԱՐՈՒՄ ԵՆ



Պիոներները օգնում են կոլտնտեսությանը

ՀԱԿՈԲՅԱՆ ՀԵՆՐԻԿ

*(Երևանի Դ. Դեմիրճյանի անվան դպրոցի 5-րդ դասարանի աշակերտ)*



Տերևաթափ

ԱՎԱԳՅԱՆ ԱԶԱՏ

*(Աշտարակի Պ. Պռոշյանի անվան դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ)*





Իսկ այս երեք նկարները («Մեխակներ», «Ծաղկաման» և «Ծառեր») նկարել է ԱՆԱՀԻՏ ՋԱՎԱՐՅԱՆԸ, երբ նա 5—6 տարեկան էր: Այժմ նա սովորում է Երևանի 71-րդ դպրոցի առաջին դասարանում:

